

# ԱՅՆ ԱՄԵՆԸ, ԻՆՉԸ ԼԱՎ Է՝

Դեռ չէին լռել քաղաքացիական մարտերի որոտները, երիտասարդ սովետական երկիրը դեռ շատ փորձությունների միջով պետք է անցներ, բայց այդ խառն օրերին էլ Վլադիմիր Իլյիչ Լենինի պայծառ միտքը դեպի ապագան էր ուղղված: Եվ երկրի տնտեսության հետագա զարգացման բազմաթիվ նախագծերի կողքին Ժողկոմխորհի նախագահի սեղանին հայտնվեց նաև մի պատմական փաստաթուղթ՝ «Դեկրետ երեխաների պաշտպանության խորհուրդ հիմնադրելու մասին»: Վլադիմիր Իլյիչը հանձինս երեխաների տեսնում էր երկրի ապագան և նրանց վիճակը բարելավելու համար ուժ ու եռանդ չէր խնայում: Այդ կարևոր փաստաթղթի առաջին կետում ասված է. «Ուշադրության առնելով երկրում ստեղծված կյանքի ծանր պայմանները և հեղափոխական իշխանության վրա ընկած աճող սերնդի վըտանգավոր, անցումնային տարիքի պահպա-

## Մեր ծիծեռնակները

ՎԱԼՏԵՐ ԱՐԱՄՅԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Այո՛, մեր ծիծեռնակներն էին: Ոչ ոք չէր հիշում, թե առաջին անգամ ե՞րբ էին ծիծեռնակները ծեփել իրենց բույնը մեր կտուրի տակ: Ո՞ր տարին, ո՞ր օրը: Բայց բոլորն էլ գիտեին, որ ծիծեռնակները գալիս և ամեն տարի նորոգում էին իրենց հին բույնը, և թվում էր մեկ, թե միշտ նոր բույն էին ծեփում իրենց համար և իրենց ճուտիկների համար, որ ծնվում էին մեր կտուրի տակ, գերանին կպած բնի մեջ: Այդ բույնը մեր*

*Երեխաների պաշտպանության մասին լենինյան դեկրետի 60-ամյակը*

# ԵՐԵԽԱՆԵՐԻՆ

Ության պարտականությունը, Ժողովրդական Կոմիսարների Խորհուրդը Ներկա դեկրետով հիմնադրում է երեխաների պաշտպանության հատուկ խորհուրդ»: Երեխաների պաշտպանության խորհրդի հիմնադրման մասին դեկրետը ընդունվեց 1919 թվականին, Մոսկվայում:

Երեխաների իրավունքների դեկլարացիան Միավորված Ազգերի Կազմակերպության (ՄԱԿ) կողմից ընդունվեց 1959 թվականին:

Վաթսուն տարի առաջ աշխարհով մեկ հնչեց հեղափոխության տիրական կոչը. «Այն ամենը, ինչը լավ է՝ երեխաներին»: Դա Հոկտեմբերի ծնած նոր հասարակարգի նոր իդեալներն էին: Եվ խորհրդանշական է, որ երեխաների պաշտպանության խորհրդի ստեղծման մասին լենինյան դեկրետն ընդունելուց վաթսուն տարի անց, աշխարհը նշում է երեխաների միջազգային տարին:

*տան, մեր ընտանիքի մի կարևոր մասն էր, և մենք չէինք պատկերացնում, որ երբևէ կարող էր դատարկ մնալ:*

*Տատիկս նրանց գալու ժամանակը գիտեր և համբերյա չէր սխալվում: Գարնանամուտից բաց էր թողնում միջանցքի պատուհանը, բաց էր թողնում, որ ծիծեռնակները գալիս մտնեին միջանցք և, երբ ուշանում էին, տատս անհանգստանում, չարանում էր, դեմքին ժպիտ չէինք տեսնում, ամեն ինչ անում էր շտապ, անհնաամ: Վլաս պապս բարկանում էր, պայթանում, նույնիսկ ճաշին տուն չէր գալիս.*

*— Գամ ի՞նչ անեմ: Դրա ծիծեռնակներն էլ չեկան, որ մարդավարի ճաշ եփի, ժպտա, թե չէ մթնդել աշնան երկինք է դառել:*

*Վերջապես, ծիծեռնակները գալիս էին և տատս բոլորովին փոխվում, մի տեսակ փափկանում, քնքշանում, մանկանում էր: Վլաս պապիս դուր էր գալիս տատիս ժպիտը, այտերին առաջացող փոսիկները և լավ տրամադրությունը, հիմա նա տուն էր շտապում, կատակներ էր անում տատիս հետ, տնից գնալ չէր ուզում:*

*— Գարունը, որդի՛, բերում են արագիլները և ծիծեռնակները՝ իրենց թևերին և կտուցներին,— բացատրում էր տատս բավականությունից աչքերը կկոցելով,— ծիծեռնակները գարունը բերում են մեզ համար, մեր տան համար, արագիլները՝ մեր արտերի, դաշտերի համար, բայց ամենից շուտ գարունը գալիս է մեր սրտերի համար: Գարունը, որդի՛, տարվա ամենալավ եղանակն է:*

*— Իսկ աշո՞ւնը,— հարցնում էի ես, որովհետև շատ էի սիրում խաղողն ու դեղձը, ընկույզն ու տանձը:*

*— Աշունը, որդի՛, բերքի, հացի ու հոտի եղանակ է, բայց մի՛ մոռանա, որ աշնանից հետո ձմեռ է գալիս... հասկանու՞մ ես: Այդ բանը չես հասկանա:*

*Ես չէի՛ հասկանում, տատս փիլիսոփայում էր: Տատս սիրում էր գարնան անձրևը, նրանից հետո խոտն էր ծլում, սունկ էր դուրս գալիս, տատս սիրում էր թեթև քամիները, թափանցիկ օդը՝ թրջված հողի հոտը, ծաղկած ծառերն ու վարարած ջրերը:*

*Այն օրը, երբ ծիծեռնակները գալիս, մտնում էին մեր միջանցքը և սկսում էին հին բույնը կարկատել, տատս կապում էր իր նոր գլխաշորը, որ Վլաս պապս բերել էր ինչ-որ «հեռավոր» քաղաքից, հագնում էր փափուկ տրեխը և ամբողջ օրը բարի էր, մեղմ, ժպտերես: Մենք այդ գիտեինք և այդ օրը տատից չէինք հեռանում, նա մեկ չիր ու չամիչ, քաղաք և ընկույզ էր տալիս:*

*— Եկել են, որդի՛, ծիծեռնակները եկել են,— շշընջում էր նա այնպես, կարծես հարազատներն էին եկել, հարազատներ, որոնց ողջ տարին կարոտը սրտում պահել էր: Ծիծեռնակների գալուց հետո մեր տանն ամեն ինչ խաղաղվում, սովորական և սիրելի էր դառնում: Բոլորս տանն էինք լինում, ոչ ոք չէր բացակայում: Տատիս համար շնչավոր էակներ էին նաև իրերը, ոչինչ դուրս չէր գցում տնից, ջարդված կճուճն անգամ նորոգել էր տալիս՝ գալիս կպցնում էին, և դնում էր իր տեղը, տնից ոչինչ չպետք է բացակայեր:*

*Ոչինչ չպետք է պակասեր, բայց պակասեց... և շատ պակասեց:*

*Վլաս պապս և Վառո տատս վաղուց է, որ չկան, մեր հին տունը նույնպես չկա: Ամեն տարի, երբ ծիծեռնակները գալիս են, ես մեր հին տունն եմ հիշում, Վլաս պապիս ու Վառո տատիս: Հիմա մեր տները փայտե գերաններ չունեն, որ ծիծեռնակներն այնտեղ բույն ծեփեն: Մեր գարունը հիմա ծաղկով է գալիս, և ամեն գարնան ես ծաղիկ եմ տանում դնում մեռած տատիս ու պապիս շիրիմներին:*

# Մ Ա Յ Ր Ը

ՄԱՐԳՈ
ՂՈՒԿԱՍՅԱՆ

(«ՈՒՇԱՑՈՒՄՈՎ ԳՐՎԱԾ ԱԿՆԱՐԿՆԵՐ» ՇԱՐՔԻՑ)

Նջարանում եմ: Դրսի դռան բացվել-փակվելն եմ լսում և ապա՝ մորս հուզը: Կամացուկ ասում է.

— Սպասեք շունչս տեղը գա:

Թեկից բռնած թոռը ներս է բերում, ու մայրս կանգնում է ննջարանի դռան բացվածքում: Գունատ, աչքերը շաղված, մազերը ցիրուցան: Հայիվ է մնում ոտքերի վրա: Թոռը թևը բաց է թողնում, մայրս մի քայլ ետ է գնում, քիչ է մնում ընկնի: Պառկած տեղս ցնցվում եմ: Լավ է, որ հենվում է դռան շրջանակին: Հարցական նայում է ինձ: Աոանց ձայնի հարցնում է. «Էլի ի՞նչ է պատահել», հետո էլ բարձրաձայն.

— Ես ձեր «շտապ օգնությո՛ւնըն» եմ: Փոքր քույրդ էլ վերմակի բուրդն էր թրջել, թողեցի եկա:

— Նստի՛, նստի՛, շունչդ տեղը գա:

— Ինձ ի՞նչ կա,— ասում է մայրս,— դուք լավ լինեք: Ես այդ անտեր ավտոյի հոտից եմ այսպես գլորվում, թե չէ ինձ ի՞նչ կա:

Ցածր աթոռը դնում են մահճակալի կողքը, մայրս նստում է. մոխրագույն խալաթ է հագել, մոխրագույն, բրդյա փափուկ շալը ուսով կապել մեջքը, բալի գույնի, բայց հոնաձև հատիկներով համրիչը ձեռքին:

Լուռ նայում ենք իրար: Աչքերի մեջ կշտամբանք կա, իբր՝ էլի մի բարակ շորով դուրս ես եկե՞լ, թե... էդ սուրճի մեջ ի՞նչ կա, տարվել եք դրան:

Սուրճից չէ, ոչ էլ բարակ շո-



Նկ. ՖԵԼԻՔՍ ԳՅՈՒԼԱՆՅԱՆԻ

## ԱՄԲԱՐԸ

րից, չգիտեմ ինչից է, ա՛յ մամ:

Այս բոլորը խոսում ենք լուռ, աչքերով, իսկ երբ մայրս հանգստանում է, հարցնում է.

— Տաքություն ունե՞ս:

— Չէ՛, լավ եմ, դու որ եկար, ավելի լավացա,— ու համրիչը ձեռքից վերցնում եմ:

Մորս ձեռքին սաթե հատիկները տաքացել են ու կարծես դարեկան փափկություն ստացել: Այդ տաքությունն ու փափկությունը թեթև հոսանքի պես փոխանցվում են ինձ և դրա հետ էլ՝ մի հաճելի հանդարտություն: Եվ այս տարիքում երեխա լինելու հաճույքը լիույի վայելելու ցանկությամբ, քաշում եմ համրիչի հատիկներն ու՝

— Ինչ լա՞վ է, որ ես եմ հիվանդացել և ոչ թե դու:

— Էլի գիժ-գիժ սկսեցի՞ր:

— Ճշմարիտ եմ ասում, մամա՛, եթե դու լինեիր հիվանդը, ես քեզ ի՞նչ պետք է պատմեի, իսկ հիմա դու ինձ կպատմես...

— Աշխարհի գիրքը դուք եք կարդում, ես՝ պետք է պատմե՞մ:

Եվ այսպես՝ կամաց-կամաց հասնում ենք անտեղ, որ ամբարը ներսից-դրսից ավլել-սրբել են, սպասում են ջրաղացից ալյուր բերելուն:

Միանգամից մի քանի պարկ բերում լցնում էին ամբարը: Ութը-ինը տարեկան հինգ-վեց աղջկա լողացնում էին, վերևից գցում ալյուրի վրա: Թռե՛ք հա թռեք: Գլորվեք: Ոտքերով տրորեք: Գլուխկոնծի տվեք: Այնքան, մինչև ալյուրը սալի: Մինչև ոտքդ սեղմես՝ ներս չգնա: Դե հիմա դուրս եկեք՝ ամբարից ուղղակի տաշտերը:

— Ա՛յ մեր, ամբարից դեպի տաշտերը գնալիս մեկը ձեկ տեսներ, լեղաճաք կլիներ, ոտից գլուխ սպիտակ:

Ծիծաղում է:

— Ո՞վ պետք է լեղաճաք լիներ, բոլորի տներում էլ այդպես էր:

Հա, մյուս օրը՝ նորից մի քանի պարկ, հաջորդ օրը՝ նորից այդքան, մինչև ամբողջ տարվա պաշարը լրանար, երեսուն շնչին կլոր տարին բավականացներ:

— Որ ալյուրը սալում էիք, հետո ինչպե՞ս պետք է հանեիք:

Դարձյալ ծիծաղում է.

— Չե՞ս տեսել է, չե՞ս տեսել: Խմոր անողը ամբարի աչքից փոքր թիակով քանդում էր, լցնում տաշտը: Դրա դժվա՞րն ինչ էր: Դժվարը աշխատելն էր: Դժվարը ալյուրը մինչև տուն հասցնելն էր, դրանից հետո... Տո՛ւր, տո՛ւր,

համրիչը տո՛ւր, քնի՛:

Համրիչը վերցնելու պատրվակով ձեռքս բռնում է:

— Ի՞նչ ես ստուգում:

— Ի՞նչ պիտի ստուգեմ, չես ուզո՞ւմ մի քիչ շփեմ:

Շփում է:

— Ա՛յ մեր, քո ձեռքերը մագնիսական հատկութուն ունե՞ն:

— Ի՞նչ:

— Քո ձեռքերը ցավը քաշում-հանո՞ւմ են:

Մի պահ ընդհատում է շփելն ու նայում ձեռքերին:

— Վախենալու բան են դառել: Մարդ որ ծերանում է, ձեռքերն ինչո՞ւ են այսքան այլանդակվում: Տեսնո՞ւմ ես, ճկույթս որ լրիվ ծռվել է:

— Շփի՛, շփի՛,— ասում եմ,— որ շփում ես, թեթևանում եմ:— Այլևս ոչինչ չեմ ասում, բայց մտածում եմ, գուցե նաև ձեռքերո՞վ են մայրերը զավակներին փոխանցում հարազատությունը, գութը, գորովը, մեղմությունը, բարությունը: Գուցե նաև ձեռքերով են երեխաներից հեռացնում վիշտն ու տառապանքը, ցավն ու անհաջողությունը: Հանկարծ մի սարսափելի միտք է անցնում գլխովս. տեսնես կա՞ այնպիսի զավակ, որ զգացած չլինի մոր ձեռքերի մագնիսական զորությունը: Եթե՝ այո, ապա ի՞նչ անգնահատելի կորուստ է կրել այդ զավակը, ի՞նչ անփոխարինելի, անհատուցելի կորուստ: Ես խղճում եմ նրան և սարսափով եմ մտածում այդպիսի զավակի մասին, որովհետև իր կամքից անկախ նրան չի փոխանցվել մոր մեջ սերնդեսերունդ կուտակված գութը, բարությունը, շնորհը: Տարբեր տարիքում՝ ձեռքերի տարբեր զորությամբ: Տարբեր տարիքում՝ ձեռքի տարբեր կայմությամբ:

— Խոսի՛, ա՛յ բալա,— ասում է մայրս:

Ինչի՞ մասին որ մտածում եմ, ասելու բան չի, բայց մի բան ասած լինելու համար հարցնում եմ.

— Թող այդ ի՞նչ երգ է լսում:

— Չգիտե՞ս: Շառլ Ազնավուրն է:

— Լա՞վ երգիչ է:

— Ինչո՞ւ, չգիտե՞ս: Սրա համար աշխարհը վառվում է: Աստված այնքան շնորհք է տվել որ: Իսկ այնպիսի մարդ կա՝ կուրկ է. աստված ոչ մի շնորհք չի տվել:

— Երաժշտությունն ի՞նչ բան է,— հարցնում եմ:

— Երաժշտությունը այնպիսի մի բան է, որ մարդկանց սրտի ժանգը մաքրում է: Հասկացա՞ր: Ժանգը, ժանգը:

Ես զարմացած նայում եմ:

— Համրիչդ տո՛ւր, համրիչդ:

Իսկ ինքը շարունակում է.

— Առանց երգի մարդ չի կարող ապրել: Սիրտը քարանում է: Ա՛յ, լսի՛, ձայնը հեռու-հեռու աշխարհներից է գալիս, բայց գալիս սրտիդ է հասնում:

Ամռան վերջին տաք օրերն են: Երկնքից կրակ է թափվում: Այս լավ-լավ օրերը ձեռքից բաց ենք թողնում՝ բուրդը մնաց:

— Բուրդը, բուրդը չփախավ:

— Ա՛յ բալա, քանի տաք է, քանդի լցրու ջո՛ւրը, քեզնից ի՞նչ է գնում: Ես ջրից կհանեմ, ինքն իրեն կցամաքի, մի երկու ճիպոտ ես կխփեմ, մի երկուսն էլ՝ դու, բուրդը կբացվի:

— Բուրդը չփախավ,— ասում եմ,— թող այս տարի անցնի:

— Վե՛ր կաց, վե՛ր կաց, մի՛ ծուլանա, դու միայն քանդի լցրու ջո՛ւրը, չես ափսոսո՞ւմ այս արևոտ օրերն իզուր կորչում են: Մոռացա՞ր, անցած շաբաթ քույրդ ի՞նչ ասաց:

— Ի՞նչ ասաց:

— Ասաց, աստված չանի քեզ մի բան պատահի, մեր բրդերը կմնան: Կմնան, բա՛, ձեր հույսին որ մնաց, բրդի վերմակները



# ՀԱՅԻ ԱՆԿՈՂԻՆԸ

կվերացնեք, պինվորի նման մի շինել կառնեք վրաներդ:

Հետո ջղայնացած ու վախեցած շեշտով՝

— Չլինեմ-չիմանամ այդպես վարվեք: Հայի տանը՝ հայի անկողին պետք է լինի:

— Լա՛վ, լա՛վ, մի՛ բարկանա, հիմա քանդում եմ,— ինձ ստիպելով և, մեղքս ինչ թաքցնեմ, վախենալով, որ աստված ոչ անի, մորս մի բան պատահի, վեր կացա մի վերմակի մեկը քանդեցի, բուրդը լցրեցի ջուրը:

Մայրս ուրախացած կանգնել նայում է, թե ինչպես եմ բուրդը թրջում:

— Տեսա՞ր ինչ հեշտ էր, այսօր՝ մի վերմակ, վաղը՝ մյուսը, դրա դժվարն ի՞նչ է: Չեկ որ մնաց, շատ եմ վախենում...

Բուրդը փռել ենք պատշգամբում, նեղվածք, նեղվածք է: Անընդհատ զգուշանում ենք, որ միմյանց չճիպոտահարենք: Մայրս բուրդը վրա է տալիս ու հանկարծ հիշում.

— Ա՞խ, մե՞ր ջան, ինչքան բուրդ եմ չփխում, միտս ես ընկ-

նում: Տասներկու տարեկան վայ թե չլինեի: Բուրդը փռել ենք լայն, ընդարձակ երդիկում: Ի՞նչ բուրդ: Մայրս վրա է տալիս, ես չփխում եմ: Տաքացել եմ, ճիպոտը խփում եմ, բրդի կրակը դուրս է գալիս: Մեկ էլ որ ճիպոտը վրա չբերեցի, խեղճ մայրս չհասցրեց ձեռքը քաշել՝ ճիպոտն իջավ մատներին: Մի մղկտա՜լ մղկտաց: Չի եղել մի տարի, որ բուրդ չփխելիս չհիշեմ: Վաթսուն տարի է անցել:

— Վաթսուն չէ, յոթանասուն,— ուղղում եմ ես:

— Լավ, թող քո ասածը լինի, յոթանասուն տարի է անցել: Գոնե մի հատ խփեր, գոնե չոռ ասեր: Ձայն չհանեց: Ձայն հանելն այն եղավ, որ իր մատները բռնած՝ ցավից մղկտաց:

Ճիպոտը ձեռքիս նստել եմ բրդի մեջ, նայում եմ մորս. աչքերի մեջ կսկիծ կա:

— Յոթանասուն տարի է անցել, յոթանասուն,— ասում եմ ես:

— Հարյուր յոթանասուն էլ անցնի, չեմ մոռանա: Դե չփխի՛, չփխի՛, քանի արևը չի թեքվել:

Եվ ես չփխելու փոխարեն մորս ասում եմ.

— Հայի անկողին ասացիր, հիշեցի: Անցյալ տարի որ Եվպատորիա էինք գնացել, հետներս մի բարակ վերմակ էինք տարել: Փռել էի բակում: Գնացի որ բերեմ, տեսա երկու կին կանգնել վերմակին են նայում: Մոտեցա: Մեկը ռուսերեն հարցնում է. «Դուք հայ եք, ճի՞շտ է»: Ասում եմ, այո՛, ինչի՞ց իմացաք: «Այս վերմակից»: Իսկ դո՞ւք ինչ ազգ եք,—հարցնում եմ ես:

— Մենք էլ ենք հայ և այսպիսի վերմակներ ունենք:

— Իսկ հայերեն գիտե՞ք:

— Ոչ,— ասում են,— նույնիսկ մեր ծնողները չգիտեին:

Պարզվեց, որ նրանց նախնիները մի հազար տարի առաջ Անիից են գաղթել, եկել հասել են Ղրիմ: Ինչքա՞ն ժամանակ է անցել: Լեզուն մոռացել են: Անուններն էլ այնքան խառնվել ու փոխվել են, որ անուններից էլ հնարավոր չէ իմանալ ազգությունը: Անահիտին Անյա են ասում, Մարիամին՝ Մանյա: Անուններն ու ազգանուններն էլ են փոխվել, բայց անկողին պատրաստելու սովորությունը մնացել է: Իրենց հարևանները ծիծաղում են, ասելով, իկուր աշխատանք, բրդյա «աղյալն» ավելի հարմար է կամ փետրավերմակը, բայց իրենք սովոր են: Պապից-պապ այդպիսի անկողնու մեջ են քնել:

Մայրս պարմացած և ուրախացած լսում է.

— Տեսա՞ր, ա՜յ բալա, տեսա՞ր, հայն առանց հայի անկողնու չի կարող ապրել:



# ԱՄԵՆԻՑ ՇԱՏ Ո՞ՒՄ ԵՍ ՍԻՐՈՒՄ

Նստել ենք պատշգամբի թախտին, խաղաղ երեկո է: Կողքկողքի, թևս և ուսս ջերմացել են: Մթան մեջ երկնքին ենք նայում: Լռությունը խզում է մայրս.

— Միայն Մարս անունով աստղն է երևում: Մյուսները չկան:

— Մյուսները՝ որո՞նք,— հարցնում եմ:

— Բույլքը, Կշեռքը, Արջը: Մանկութ դրանց այնքան եմ նայե՞լ: Երկրում դրանցով էին ժամանակը որոշում: Վաղուց չեմ տեսնում, չեն երևում:

Ուզում եմ ասել՝ գուցե աչքիդ լո՞ւյսն է պակասել: Խոսքս փոխում եմ.

— Մտքովդ ի՞նչ է անցնում:

— Ի՞նչ իմանամ, բալա՛, երկինքն այնքան խառնեցին, աստղերն էլ կորան: Առաջ երկինքը լիքը աստղ էր: Հիմա միայն այս մեկն եմ տեսնում,— ու ձեռքը մեկնում է դեպի իրեն երևացող միակ պայծառ աստղը:

— Մա՛,— ասում եմ,—կողքին ուրիշ աստղեր էլ կան, ուշադի՛ր նայիր:

— Ասում եմ, էլի, Բույլքը, Կշեռքը, Արջը ո՞ւր են, վաղուց չեն երևում:

Ես գրկում եմ մորս ուսերը:

— Գիտե՞ս, որ ամենից շատ ես եմ քեզ սիրում, իմ փոքրի՛կ մայրիկ:

— Ինչո՞ւ չէ,— ասում է,— որ ամիսը մեկ անգամ տեսնես, կսիրես:

— Իսկ դու ամենից շատ ո՞ւմ ես սիրում:

— Էլի սկսեցի՞ր, ա՜յ բալա, տասը մատ ունեմ, ո՞րը կտրվի, որ պակաս ցավի:

— Չէ՛, չէ՛, տասը մատից հեքիաթը մեջտեղ մի՛ բեր, շատ ենք լսել, դու ճի՞շտն ասա:

Գլուխն ապատելու համար ասում է.

— Ջիգյարը բրինձ չէ, որ ջոկեմ:

Ջինաթափ եմ լինում. սա ի՞նչ նորություն է: Նոր հնարե՞ց: Առաջին անգամ եմ լսում: Ուսերը թևովս սեղմում եմ.

— Պուճուրիկս,— ասում եմ,— այս ի՞նչ է պատահել, չէ՞ որ դու մեր բոլորից բարձրահասակ էիր, ուժեղ էիր:



# ՊԱՏՎԻՐԱՆԸ, ԿԱՄ ՎԵՐՋԻՆ ՀՈՒՇ

Անցել է երեք տարի:

— Մա՛յր իմ, դու ամե՞ն ինչ ես պատմել:

Ոչ մի պատասխան. ձեռնափայտին հենված հատակին է նայում:

— Ճի՛շտն ասա, մա՛յր իմ, ամե՞ն ինչ ես պատմել:

Մի քիչ էլ անպատասխան է թողնում և հանկարծ շեղակի նայելով ինձ՝

— Ասե՞մ, թե՞ չասեմ:

Տատանվում է։ Եվ պատճառը այդ եղավ, որ ոչ միայն ես, այլև մյուսները (թոռները հատկապես) խոսքները մեկ արեցին.

— Ասա՛, ասա՛, քանի չես մոռացել:

— Մոռանալու բա՞ն է, որ մոռանամ: Հենց հիմա կարծես աչքիս առաջ եկավ:

Երեկոյան կողմ ձիու սայլը կանգնեց մեր դռանը: Մաշված հագուստով մի ծերունի իջավ. սպիտակ մորուքով, փափախով, հին արխալուղով: Սայլի մեջ էլ լիքը չուլ-չափուտ: Հայրս ներս հրավիրեց: Տարավ օդեն:

Առավոտ շուտ հայրս արթնացրեց ինձ, թե շուտ վե՛ր կաց, գնա՛ ժդեն, մեր հյուրի՝ այն ծեր սալլապանի ձեռքերին ջուր լցրու: Սրբիչը գցեցի ուսիս: Կժով ջուրը վերցրի գնացի: Դուռը բացեմ որ ի՞նչ, մի հուրի-հրեղեն աղջիկ, մազերը փնջի պես ոլորած, շարմաղ երեսով: Նայում եմ չորս բոլորս. ո՞ւր է ծերունին, ո՞ւր են սպիտակ մորուքն ու հին արխալուղը:

Ջուրը լցրեցի, աղջիկը լվացվեց: Ապշած դուրս եկա: Հայրս օդայի դռան առաջ կանգնած ինձ էր սպասում: Աչքերը ոլորեց վրաս ու մատը շրթունքներին դրած՝

— Սո՛ւս,— ասաց,— սո՛ւս, մարդու բան չասես:

Հորս ասածն հասկացա: Մարդու ասելու բա՞ն էր, որ ասեի:

— Այդ ժամանակ քանի՞ տարեկան կլինեիր:

— Վայ թե տասը չկայի:

Դուրս եկա բակ: Սայլի չորս բոլորը պտտվում եմ: Տունը կարծես մարդ-մարդասանք չկա: Թոնրատնից ոչ մեկը դուրս չի գալիս: Ով գիտի, հայրս էր պատվիրել: Հորս ահից մարդ կարո՞ղ էր շարժվել:

Քիչ հետո մորուքով ծերունին դուրս եկավ, հորս մնաս բարով ասաց ու գնաց:

Վան էր գնում: Ճանապարհը մեր գյուղի միջով էր անցնում: Ռուսաստանից պենք բերողները գիշերը մեր գյուղում էին հանգստանում:

— Ի՞նչ գիտես, որ պենք էր տարածը: Դու չասացի՞ր սայլը լիքն էր չուլ-չափուտով:

Ծիծաղում է:

— Ես ասացի, դու էլ հավատացի՞ր: Սայլը, դե գիտես, դրսից որ նայես, մի բան չէ: Փայտերը կարգին չեն էլ տաշում: Առանց մեխի. որտեղից որ պետք է ծակում են, իրար մեջ հագցնում: Սայլի տակը մի շարք տախտակ. վրան՝ պենք կամ վառոդ, դրա վրա նորից մի շարք տախտակ: Իբր սայլի հատակը դա է: Դրա վրա էլ չուլ-փալաս. իբր խեղճ ժողովորդ եմ, գյուղեգյուղ ման եմ գալիս. ապրուստ եմ հավաքում:

— Մա՛յր իմ. քո կարծիքով ի՞նչ եղավ այդ աղջիկը:

— Գնաց Վան: Թե ճանապարհին չբռնեցին՝ տեղ հասավ, պենքը տվեց ում որ պետք էր: Այնտեղից նորից ետ եկավ, գնաց Ռուսաստան: Իսկ թե բռնեցին, ինչ ասեմ, ա՛յ բալա, գլուխը կերած կլինեն:

Լռում է: Անթարթ նայում եմ:

— Ի՞նչ ես այդպես նայում, ա՛յ բալա, անցած-գնացած բան է:

— Ինչո՞ւ մինչև հիմա այդ միջադեպը չէիր պատմել:

— Միջադեպը՛,— երկարացնում է մայրս,— մոռացա՞ր, հայրս պատվիրել էր՝ սուս, մարդու բան չասես: Համ էլ, ա՛յ բալա, դա ասելու բա՞ն էր: Աղջիկը մահն աչքն առած Ռուսաստանից պենք էր բերում, գյուղեգյուղ բաժանելով գալիս էր կամ էլ բոլորը տանում էր Վան:

— Այդ աղջկան ի՞նչ հյուրասիրեցիք:

— Հյուրասիրելը ես ի՞նչ տեսա, թոնրատանը մայրս պատրաստում էր, հայրս տանում էր

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
Բանասիրության դոկտոր

## II. ԵՐԿՈՒ ԽԱՂ ԲԱՌԱՊԱՇԱՐԸ ՀԱՐՍՏԱՑՆԵԼՈՒ ՆՊԱՏԱԿՈՎ

Չգիտեմ նույնիսկ ի՞նչ անուն տալ այդ խաղերին, բայց կարևորն էությունն է: Երկուսն էլ շատ հետաքրքիր են ու օգտակար և, հավանորեն, շատերին ծանոթ:

Մեկի կարգը հետևյալն է. երկու կամ մի քանի հոգի ընտրում են մի որևէ բառ, հետո ամեն մեկն առանձին բառեր է կազմում մայր բառի մեջ եղած տառերով (գոյականներ և ածականներ): Ասենք թե ընտրեցինք նորակառույց բառը, ի՞նչ բառեր կարելի է կազմել դրա մեջ եղած տառերից: Նոր-ն ու կառույց-ն իսկույն երևում են, բայց հետո գալիս են օր (բառամիջում հնչող օ-ն օ էլ մնում է), ակ, ակն, ական, ակնոց, այց, ոյր, արան (կարելի կլիներ՝ արական, բայց բառի մեջ 3 ա չկա), կար, կոր, կրան, կու, ուրց, ուրան, ունկ, յար, ցուլ, կարուն, ցան... Տեսնո՞ւմ եք ինչքան բառեր դուրս եկան, շատ հնարավոր է, որ ես բոլոր բառերը չգտա, փորձեք ավելացնել:

Երբ պայմանավորված ժամանակը լրանում է, անցնում են ստուգման. մեկը կարդում է, մյուսը (կամ մյուսները) ջնջում են այն բառերը, որ իրենք էլ են գտել: Հաղթում է նա, ով մյուսներից ավելի շատ բառ է գտել:

Վերջերին մտաբերելով Պարույր Սևակին, ասեմ, որ այս խաղում հաղթողը միշտ նա էր լինում: Այնպիսի բառեր էր գտնում, որ ոչ մեկի մտքով չէր անցնում: Հիշում եմ, մի անգամ նա գրել էր նոտր բառը: Վեճ ընկավ, թե նման բառ չկա: Պարզվեց, որ շատ լավ էլ կա, բառարանում գրված էր՝ նոտր գիր նշանակում է շեղ գիր: Մենք պարտվեցինք, բայց փոխարենը սովորեցինք ևս մի բառ:

Իրոք, սա հիանալի խաղ է, որից հաղթողն էլ, պարտվողն էլ շահում են հավասարապես, չէ՞ որ երկուսն էլ շարժում են իրենց միտքը, հարստացնում բառապաշարը, վարժվում ուղղագրության, մեջտեղ բե-

օդան: Ձեռքերին ջուր լցնելուց հետո մեկ էլ այն տեսա, որ երեկվա ծերունին դուրս եկավ մորուքով, փափախով:

— Ուրի՞շ:

— Ուրիշ էլ ի՞նչ: Հա՛, մի բան էլ կա,— հանկարծ հիշեց մայրս:— Դե, գիտես, մեր կողմը անտառ չկար: Գնում էին Ռուսաստանից գերան բերելու: Խոշոր գերաններն առնում էին, մեջտեղից կիսում, ներսի կողմից փոս անում ու այդ փոսի մեջ վառոդ էին լցնում կամ էլ ֆիշակ: Ֆիշակին դուք ի՞նչ եք ասում:

— Պարկուճ:

Գերանները վրա էին բերում, ամրացնում իրար, գլորում ցեխերի մեջ, շղթաներով կապում լծած եզներին: Քաշեքաշ գալիս էին գյուղ: Տղամարդիկ հավաքվում էին գյուղամիջում, բերողներից մեկը բաժանում էր, ա՛ռ այս երկու գերանը քեզ, դու տուն ես սարքում, սա քե՛զ՝ ձեր գոմի ծածկը փտել է, այս մեկը՝ քե՛զ... այդպես բաժանում էին ում որ պետք էր:

— Լավ է, չես մոռացել:

— Մանկության տեսածս հիշում եմ, բայց երեկվա կերածս չեմ հիշում:

— Յոթանասունհինգ տարի գաղտնիքը պահել ես,— ասում եմ:

— Սովորույթ էր, տունը որ հյուր գար, աղջիկը պետք է ձեռքերին ջուր լցներ: Ես էլ թեթև աղջիկ էի, հայրս ինձ ուղարկեց:

— Ուրի՞շ:

— Հորս խպայլ ձիու մասին պատմե՞լ եմ: Հայրս որ «Սարգիսով» ժամացույցը գտավ, աչքերը ցվեցին, փաթաթվեց ձիուն, համբուրեց...

Մայրս ընդհատեց պատմությունը, կորացած հենվեց ձեռնափայտին ու նայում էր հատակին:

Մտքով նա նորից երկիր էր գնացել և երբ ասաց՝ «այդքան բան եմ տեսել, դեռ ապրում եմ», մեր ներկայությունը մոռացել էր ու իր անցավորների հետ էր կրուցում:

րում ենթագիտակցության խորքերում թաքնված բառերը, ակտիվացնում պասսիվ բառապաշարը, մի խոսքով՝ բարձրացնում լեզվի կուլտուրան:

Նույնքան օգտակար է և մեկ ուրիշ բառախաղ, որ իր ընթերցողներին առաջարկել է ռուս գրող և լեզվագետ Լև Ուսպենսկին:

Խաղի կանոնները նույն են, միայն թե այս անգամ ընտրվում է մի որևէ բառարմատ և մրցակիցները բարդ և ածանցավոր բառեր են ստեղծում դրա հիման վրա: Ասենք թե ընտրվել է ջուր բառը, և ահա խընդրեմ՝ ջրալի, ջրաբեր, ջրառատ, ջրատար, ջրաբաշխ, ջրվոր, անջրդի, ջրապտույտ, ջրածին, ջրաբույս, ջրահեղձ, ջրամուկ, ջրաներկ, ջրավազան, ջրասույզ, ջրադիմացկուն, ջրլող, ջրաբաժան, ջրհեղեղ... Լա՛վ, բավական է, ժամանակը սպառվեց: Անցնենք ստուգման: Հաղթում է նա, ում բառապաշարն ավելի հարուստ է, ում միտքն ավելի արագ է աշխատում և ավելի ճկուն է:

Պատմելով՝ այս խաղերը գուցե շատ էլ հետաքրքիր չթվան, բայց խաղալիս իրոք հետաքրքիր են, մինչև անգամ հափշտակող, եթե, մանավանդ ուժերը հավասար են լինում: Գուցե փորձե՞ք, սովորեցնեք նաև ուրիշների՞ն: Կարելի է նույնիսկ տարբեր դասարանների, թերևս նաև դպրոցների ամենաիմաստ խաղացողներին հանել միմյանց դեմ:

Ասեմ նաև՝ բառեր կազմելիս չպիտի մտածեք գրակա՞ն բառեր են դուրս գալիս, թե՞ բարբառային, բուն հայերե՞ն, թե՞ օտարամուտ, «տգե՞ղ» բառեր են, թե՞ «գեղեցիկ»:

Ինչո՞ւ: Կբացատրենք հաջորդ անգամ:

# ԻՆՉ ՈՐ ԳՏԱ

ԳԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Հայրիկիս հետ
Բարձրացա սար,
Մաղկունք տեսա
Հազար-հազար:

Հազար աղբյուր
Տեսա երգիչ,
Հազարալիք
Մի կապույտ լիճ:

Տեսա գարնան
Անտառ կանաչ,
Մեջն՝ արևի
Անթիվ ճաճանչ:

Արծիվ տեսա՝
Կտուցը կեռ,
Ոտների տակ՝
Երկինք ու լեռ...

Ինչ-որ տեսա,
Բերեցի տուն,
Եվ ինձ հետ են
Քուն թե արթուն:




Նկ. ԱՆՈՒՇ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ

*Ամեն մեկն ուզում է ուրիշներին դուր գալ, և այդտեղ դատապարտելի բան չկա: Իսկ որպեսզի դուր գաս, պետք է նախ և առաջ... նկատվես:*

*Ա՜խ, դպրոցում որքան է դժվար այդ: Բոլորը միայնույն գիտեն առաջին դասարանից սկսած: Բոլորը համարյա իրար նման զգեստ, գոգնոց, օձիք ունեն: Դև ուշադրություն հրավիրիր քեզ վրա, տեսնեմ ինչպե՞ս ես հրավիրում:*

*Բայց դժվար է՝ չի նշանակում անհնարին է: Մեր դասարանի աղջիկները համոզված են դրանում:*

*Մարինան, Գալինան ու Նատաշան մազերը բաց են թողնում և այնպես փաթաթում, որ դառնում են բոլորյան սիրունիկ շնիկի նման:*

*Օլգան և Տանյան մատիտով երկում են աչքերը, որպեսզի աչքերն ավելի մեծ և արտահայտիչ դառնան: Իսկ Լենան և մյուս Տանյան թերթերունքերը տուշով սևացնում են և կոպերը ներկում:*

# ՀԱՑԸ ՊԵՏՔ Է ՊԱՀԵԼ ԳԼԽԻՑ ՎԵՐ

*ԳԵՎՈՐԳ ԶԱՐԵՆՑ*

Գործարանից տուն վերադառնալու ճանապարհին վարպետ Աշոտը հացի մի մեծ կտոր տեսավ ձյունախառն ցեխի մեջ ընկած: Վերցրեց դրեց ճամփեզրի ցանկապատի վրա: Հորից էր ժառանգել այդ սովորույթը: Հայրը ճանաչված սերմնացան էր գյուղում և երևի մինչև օրս ողջ լիներ, եթե պատերազմը չլիներ: «Հացը գետնին գցելը մեղք է: Հացը սուրբ է, պետք է հացը գլխից վեր պահել»,— ամեն անգամ գետնին ընկած հաց տեսնելիս՝ հոր խոսքն էր հիշում վարպետը, միաժամանակ մտածելով, թե մի կիլոգրամ հացը քանի հատիկ ցորենից է գոյանում, ինչքա՜ն քրտինք է թափվում դրա համար, մինչև հաց է դառնում:

Ու հիմա էլ...

— Բարև՛, վարպե՛տ Աշոտ:

Ասատուրն էր: Գործարանում պահակ էր և հիմա շտապում էր հերթափոխելու:

— Բարև՛, սառը, առանց նրա կողմը նայելու, պատասխանեց վարպետը: Նայելու հարկ չկար, ձայնից ճանաչեց Ասատուրին: Իսկ այդ ձայնը նրա ականջում էր դեռ 1946 թվականից:

Ասատուրը շարքային միլիցիոներ էր պատերազմի տարիներին և դրանից հետո, մինչև կենսաթոշակի անցնելը: Ամեն առավոտ ձիգ-ձգված գալիս էր կանգնում հացի խանութի առաջ, որ հերթը խանգարողներ չլինեին:

Հացի խանութը շուկայում էր: Խանութի առաջ տարին կլոր հերթ էր: Տաք օրերին՝ էլի ոչինչ: Իսկ երբ սկսվում էին ցրտերը, անտանելի էր հերթ կանգնելը: Ցուրտը թափանցում էր քաղցած, վատ հագնված մարդկանց մարմինները, սողոսկում մինչև ոսկորները: Մարդիկ ստիպված փայտ ու լրագրեր էին բերում տներից, վառում, կրակի շուրջը կոր շրջան կազմում, որ տաքանան: Իսկ երբ կրակ չէր լինում, ամեն մեկը իր փոխարեն մի քար էր դնում և գնում տուն քնելու կամ տաքանալու: Քանի որ ամեն օր գրեթե նույն մարդիկ էին հերթի կանգնում, գիտեին, թե որ քարը ում է փոխարինում:

— Սա մորաքույր Սաթենիկի քարն է: Սա՛ ուստա Վահանի քարն է: Էս մեկը պոտնիկ Սաքոյինն է: Էս չեչոտ քարը Վարդան քեռունն է...



*Աղջիկներն, իհարկե, իրենց վրա ուշադրություն են հրավիրում: Բայց առայժմ միայն ուսուցիչների ուշադրությունը:*

*— Մեր տղաները շա՜տ անճաշակ են,— հառաչում է Օլգան:*

*— Նրանք իսկի՛ բան չեն հասկանում,— քիթը կնճռոտում է Գալյան:*

*Տառապում են աղջիկները, բայց չեն հանձնվում:*

*Գալյան ու Նատաշան դասամիջոցին ականջներին ականջազարդ են կպցնում:*

*Օլգան թևքերը կտրել է մինչև արմունկները ու տեղը ժանյակ կարել: Տանյան զգեստը կարճացրել է, Լենան, ընդհակառակը, երկարացրել և բոլորածալով երիզել:*

*Բայց հրա՞շքը, հրաշքը չէր կատարվում:*

*Ա՛յն կատարեց Օկսանան:*

*Մինչև այժմ մեր աղջիկների հիշողության մեջ չէր մնացել մի այնպիսի բան, որ Օկսանայի հնարամտության մասին վկայեր: Եվ ահա, պատկերացնո՞ւմ եք...*

*Օկսանան դադարեց մազերը բաց թողնել, թերթերունքները ներկել, ձևափոխել զգեստը: Նա այլ միջոց գտավ...*

*Այդ օրը, ես սովորականի պես դասից ուշացել էի: Ուսուցչի հանդերձարան և այնտեղ տեսա Օկսանային: Նա հանեց վերարկուն և պարզվեց, որ... դպրոց է եկել առանց այդ ու զարդարանքի, սովորական սրճագույն զգեստով:*

*Մենք դասարան մտանք միասին:*

*Տառացիորեն բոլորը հայացքները գամեցին նրան: Նա հպարտ ընթացավ դեպի իր-տեղը: Տղաների մեջ շշուկ ընկավ:*

*Թվում է, թե միանգամից նա՛ դուր եկավ բոլորին:*

*ՄԱՐԻՆԱ ՍՎԵՐԴԼՈՎԱ*
*14 տարեկան, Մոսկվա,*
*N 5 հատուկ դպրոց*

Եվ այսպես կթվարկեին բոլոր քարերը, որ շարված էին խանութի պատի տակ:

Վարպետ Աշոտն էլ իր քարն ուներ: Այն ժամանակ նա, իհարկե, վարպետ չէր, 15—16 տարեկան մի նիհար տղա էր, հագին՝ մաշված բաճկոնակ, թաղիք հիշեցնող կտորից կարված մի անդրավարտիք, որ ինչքան վեր էր քաշում, էլի ներքև էր իջնում, թեև չորս անգամ փոխել էր կաշվե գոտու անցքերը: Փող ունե՞ր, կոնքեր ունե՞ր, որ անդրավարտիքը տեղը մնար: Այդ օրերից մի օրը ամուր էր մեխվել վարպետի ուղեղում: Այսօրվա պես հիշում էր, առաջին անգամ հերթում իր փոխարեն քար դրեց: Հաշվեց, քառասունութերորդն էր:

— Պապի՛, ժամը քանի՞սն է,— հարցրեց հերթի կանգնած, քուրքի մեջ փաթաթված միակ մարդուն՝ Վաղինակին, որ գիշեր-ցերեկ խանութի մոտից չէր հեռանում և միշտ առաջինն էր հերթում:

— Չորսից քանի պակաս, որդի՛ ջան, գնա քնի՛, քո քնելու ժամանակն է: Ես կասեմ, որ դու հերթ ունես:

Աշոտը մի անգամ էլ նայեց պատի երկայնքով շարված քարերին, որ հանկարծ չշփոթի իր քարի տեղը, ու լուռ հեռացավ: Տունը մոտ էր, շուտ հասավ ու մտավ անկողին: «Հացը ութին են վաճառելու, դեռ չորս ժամ կա»,— մտածեց նա ու վերմակը քաշեց գլխին: Ցրտից ընդարմացած մարմինը եռ եկավ, տաքացավ, ու քունը հաղթեց:

Մայրը տանը չէր: Հին ու նոր շորեր էր տարել հարևան գյուղերը՝ կարտոֆիլի հետ փոխանակելու: Փոքրիկ քույրերն ու եղբայրներն էին տանը մնացել: Արթնացավ, երբ արդեն ութն անց էր: Շտապ հագնվեց ու, առանց լվացվելու, վազեց խանութ: Հերթը ձգվել, դուրս էր եկել շուկայի ցանկապատից: Քեռի Վաղինակը չկար: Գնել էր իր հացն ու հեռացել: Որոնեց իր քարը, չգտավ: Չկային նաև մյուս քարերը: Քարերին փոխարինել էին մարդիկ: Հանկարծ հերթի առաջին մասում, մարդկանց ոտքերի տակ, նա նկատեց չեչոտ քարը: Հիշեց, որ դա տասներորդն էր: Քարերի փոխարեն սկսեց հաշվել մարդկանց ու գտավ իր տեղը:

— Սա իմ տեղն է,— փորձեց համոզել իր տեղը կանգնած մարդուն:

— Մի՛ խցկվիր հերթի մեջ: Մենք քեզ նմաններին լավ ենք ճանաչում,— մոտեցավ միլիցիոներ Ասատուրը և Աշոտի թևից բռնելով՝ մի կողմ քաշեց: Լաց եղավ տղան:

— Ակնի՛վ խոսք, քեռի՛, ես ա՛ստեղ եմ եղե…

Լացը խլուր անցավ: Ոչ ոք նրան չէր տեսել հերթում կանգնած, որ պաշտպաներ: Միայն քեռի Վաղինակն էր, նա էլ… Արցունքն աչքերին նա սկսեց որոնել իր քարը: Եվ երբ հերթը շարժվեց առաջ, մարդկանց ոտքերի արանքից տեսավ մի փոքր հեռու ընկած իր քարը:

— Տեսե՛ք, տեսե՛ք,— ուրախությունից ճչաց Աշոտը՝ մատնացույց անելով ողորկ գետաքարը, որ նա բերել էր նախորդ օրը Աղստևի ափից: Նոր քար էր: Ոչ ոք չգիտեր, թե դա ում է «ներկայացնում»: Մի քանի հոգի շրջվեցին քարի կողմը, հետո հարցական իրար երեսի նայեցին: Իսկ մի ծեր կին, որ արդեն իր բաժին հացը գնել էր ու դուրս եկել հերթից, տեսնելով արտասվող պատանուն, մոտեցավ նրան.

— Լաց մի՛ լինի, տղա՛ ջան, քեզ տղամա՛րդ պահիր: Անունդ ի՞նչ է:

— Աշոտ:

— Հա՛,— ծոր տվեց կինը,— ուրեմն Աշոտը դու ես: Վաղինակն ասաց, որ դու քառասունութերորդն ես: Քարդ էլ ինձ ցույց տվեց: Հիմա որտե՞ղ է քարը:

Աշոտը մատնացույց արեց:

— Հենց սա է, որ կա,— ճանաչեց կինը և ուղղվեց դեպի միլիցիոները: Սա թե ինչ ասաց նրան, Աշոտը չլսեց: Միայն տեսավ, որ միլիցիոները չար հայացք նետեց դեպի քարը, մոտեցավ Աշոտի տեղը կանգնած մարդուն, պատվի առավ ու խիստ տոնով ասաց.

— Ե՛տ քաշվեք, քաղաքացի՛, թողե՛ք, որ տղան իր տեղը կանգնի:

Արցունքը չորացավ աչքերում: Ասես մի ամբողջ աշխարհ պարգևեցին իրեն:

Հացը գրկած դուրս եկավ, շտապեց տուն՝ իր փոքրիկ եղբայրներին ու քույրերին ուրախացնելու:

Տարիների միջից հարություն առած հուշերը պղտորել էին վարպետի հոգին: «Հետաքրքիր է, Ասատուրը հիշու՞մ է այդ օրը, ուրիշները հիշու՞մ են: Եվ եթե հիշում են, ինչու՞ են հացի նկատմամբ բարբարոս դարձել: Երեկ էլ երկու դպրոցական տղաներ չորացած բլիթով «կլաս» էին խաղում: Դրա նախորդ օրը գործարանի ճաշարանում մի խումբ ջահելներ հացի միջուկը գնդում, իրար վրա էին շպրտում: Ախր ջահելները չեն տեսել այն սև օրերը, մենք էլ, ոնց որ պետք է, չենք պատմել նրանց»:

ՆՈԴԱՐ ԴՈՒՄԲԱՁԵ

# HELLADOS

Հաջորդ օրը դպրոց չգնացի, վերքերս էի բուժում: Երրորդ օրը թաղի բոլոր տղաները հավաքվել էին երկաթգծի կամրջի տակ:

Ինձ ու Կոկային սուլելով դիմավորեցին:

— Սկրի՛պկա, վերջդ եկել է:

— Սպանելու է, փախի՛ր:

— Թիֆլիսը չկարծես, հա՞:

Ամբողջ բիրժան լսել էր ինձ ծեծելու լուրը:

Յանգուլից բացի, բոլորն այնտեղ էին:

Պայուսակս լուռ դրեցի սանդուղքին, նստեցի ու սպասեցի Յանգուլին:

— Գալիս է Յանգո՛ւլը,— հանկարծ գոչեց ինչ-որ մեկը:

— Հիմի ցի՛րկը կսկսվի:

— Բարև՛ ձեզ,— ողջունեց Յանգուլը և, երբ ինձ տեսավ սանդուղքին նստած, զարմանքից աչքերը չռվեցին:

— Յանգո՛ւլ, բուլկին իր ոտքով եկել է, արի կե՛ր,— ասաց Պետյան:

— Վրան կարա՞գ ես դնելու, թե՞ խավիար, Յանգո՛ւլ:

Վայրահաչներին ուշադրություն չդարձնելով՝ Յանգուլը հռետորի նման ձեռքը բարձրացրեց, ամբոխին լռեցրեց և պատմական ճառով այնպես դիմեց իր ժողովրդին, ինչպես համայնքի առաջնորդները կդիմեին.

— Տղե՛րք,— սկսեց նա,— ես դիմում եմ ձեզ՝ Վենետիկյան խճուղու ազատագրված համայնքի պալատականներից, ես՝ ձեր կողմից ընտրված առաջնորդս, Յանգուլ Ալեքսանդրիդիս: Ձեր աչքերի առաջ կանգնած են թիֆլիսեցի դալկադեմ մի հարիֆ ու նրա մորաքրոջ տղան, մեր համայնքի ծախողն ու հայրենիքի դավաճանը՝ փսլնքոտ Կոկան: Այս դալկադեմ ապերախտը չարաշահելով մեր հյուրասիրությունը, մեծահոգությունն ու բարեսրտությունը, փափագում է սեփականացնել մեր օրհնյալ հողը, ծովը, ջուրը, ոսկին, արծաթը, արոտավայրերն ու բիզոնները...

— Ցնդաբանությանդ վե՛րջ տուր, պիտի կռվենք,— ընդհատեցի ես:

Յանգուլը խոսքը կտրեց ու նայեց աչքերիս մեջ:

— Ես հիմի ցույց կտամ, թե քեզ նման սմքածներից ոնց են կոտլետ սարքում...

— Միմոսություն մի՛ արա, սկսենք:

— Էյ դո՛ւ, փսլնքոտ,— դարձավ Կոկային,— գնա «շտապ օգնություն» կանչի, ասա հինգ րոպեից էստեղ լինեն, որ մորքուրիդ հաշմանդամ տղային տանեն:

Հավաքվածները հռհռացին:

— «Շտապ օգնությունը» էսօր քեզ է տանելու,— ասացի ես ու վեր կացա:

Տղաները շրջան կազմեցին: Յանգուլը հունարեն նորից ինչ-որ բան ասաց Պետյային: Պետյան փնչաց ու գոտին արձակեց: Շշմած նայում էի Պետյայի կաշվե հաստ գոտուն. «մի՞թե սրանով է կռվելու»: Պետյան գոտին տվեց Յանգուլին ու վերադարձավ իր տեղը: Յանգուլը հաղթական նայեց տղաներին ու բարձրաձայն հայտարարեց.

— Ես դալկադեմի հետ ես երկու ձեռքով չեմ կռվելու: Պե՛տյա, արի՛ ձեռքերիս մեկը կապիր:

Տղաները հրճվանքով ռժժացին:

Յանգուլը ձախ ձեռքը սեղմեց իր ազդրին: Պետյան Յանգուլի ձախ ձեռքը գոտիով կապեց մեջքին:

— Դերասանություն մի՛ արա, ձեռքդ հանի՛ր, թե կռվել ես ուզում,— խզված ձայնով ասացի ես:

— Ինձ չի վայելի՝ քեզ հետ երկու ձեռքով կռվել:

Տղաները նորից գոհունակ ռժժացին:

— Որ այդպես է, չեմ կռվի,— ասացի ու պայուսակս վերցրի:

— Վախենում ես, չէ՞:

— Ոչ թե վախենում եմ, այլ չեմ ուզում: Ձեռքդ հանի՛ր և հացդ կուտես:

— Կռվի՛ր, թե չէ կողերդ կփշրեմ:

— Գնա դո՛ւ հանի,— հուշեց Կոկան:

Ես համառեցի: Յանգուլը մոտեցավ ինձ ու ապտակեց: Երեսս այնպես վառվեց, ասես շիկացած թիթեղ կպցրին: Ոչ մի շարժում իմ կողմից: Յանգուլը ապտակեց երկրորդ անգամ, երրորդ... Տեսնելով պաշտպանվելու փորձ անգամ չեմ անում՝ դադարեցրեց ապտակներ տեղալը: Ես դուրս եկա շրջանից: Տղաները սուսուփուս ետ-ետ քաշվեցին:

— Էհ՜, սկրի՛պկա,— թիկունքից լսեցի Պետյայի ձայնը, անմիջապես հաջորդեց ապտակի հուժկու շառաչը: Դա արդեն Յանգուլի հասցրած ապտակի շառաչն էր Պետյային:

Լալիս էի, ետ չնայեցի, որ տղաները չտեսնեն արցունքներս: Մի բան սակայն պարզ էր. այսօրվա կռվում պարտվողը Յանգուլն էր:

---

Սկիզբը՝ № 2

Հաջորդ օրը, առավոտ ծեգին, կանգնած էի Ալեքսանդրիդիի տան առաջ: Խրիստո Ալեքսանդրիդին փայտն ամրացնում էր էշին, իսկ Յանգուլը օգնում էր նրան: Ինձ տեսնելուն պես մոտեցավ:

— Եկել ես բողոքե՞ս,— հարցրեց ու խոր կռացրեց նայեց:

— Կռվելու եմ եկել,— պատասխանեցի ես:

— Ո՞վ է,— առանց մեր կողմը դառնալու հարցրեց հայրը:

— Ընկերս է:

— Յանգուլը ժամանակ չունի, շուկա ենք գնում,— շրջվեց, տեսավ ինձ ու զարմացած հարցրեց.— Հաշտվե՞լ եք:

— Հաշտվել ենք,— պատասխանեցի ես:

— Ա՜յ ապրեք դուք, ա՛յ, ինչ եմ ասել,— ուրախացավ Խրիստոն և ինձ բակ հրավիրեց:

— Շտապում եմ,— հետո դարձա Յանգուլին,— շուկայից ե՞րբ կվերադառնաս:

— Իրիկնադեմին:

— Կամրջի մոտ կսպասեմ քեզ:

●

Երեկոյան, կամրջի տակ սպասում էի Յանգուլին: Եկավ: Ոչ մի ձայն: Էշը Աղամենց ձողապատից կապեց, խալաթը հանեց, գցեց էշի մեջքին, և ես նրա կրծքի վրա նորից կարդացի HELLADOS բառը:

Այդ օրը մեր կռվի միակ վկան էշն էր:

Այս անգամ տուրուդմբոցը ավելի երկար տևեց: Այս անգամ էլ առաջին հարվածը Յանգուլը հասցրեց: Երերացի, բայց չընկա: Ձեռքը երկրորդ անգամ տարավ, բայց բերելու պահին խույս տվեցի, և նրա ձեռքը շաչեց ու անցավ քթիս տակից: Թափն այնքան ուժեղ էր, որ չկարողանալով ուղիղ կանգնել, փոքր-ինչ թեքվեց: Նրա կզակը այնպես կախվեց օդում, ինչպես առաջին կռվի ժամանակ և մինչ նա կշրջվեր, ինչքան ուժ ու հնար ունեի՝ բռունցքով խփեցի ծնոտին: Յանգուլը փռվեց գետնին և մի քիչ մնաց անշարժ: Չէի կարծում, թե ոտքի կելնի, բայց անսպասելիորեն ոստնեց և նրա ապտակն ու իմ բռունցքը միաժամանակ հասան նպատակին: Ես երերացի, մի ծնկի վրա չոքեցի և ակամա ծածկեցի դեմքս: Երբ ձեռքս ետ տարա ու աչքերս բացեցի, տեսա Յանգուլը ճիշտ ինձ նման չոքել, քթածակից հոսող արյունն է մաքրում: Իմ քթից էլ էր արյուն գալիս: Մի կերպ ոտքի կանգնեցինք:

Երկար ժամանակ միմյանց էինք նայում: Ականջիս էր հասնում նրա ծանր ու խորը շնչառությունը: Նրան էլ երևի՝ իմը: Յուրաքանչյուր վայրկյան հարձակման էի սպասում, բայց զարմանալի էր, որ կռվելու ո՛չ տրամադրություն կար, ո՛չ ցանկություն: Ներքին ինչ-որ բավարարվածություն էի զգում: Զգում էի, որ սրանից հետո Յանգուլը չի համարձակվի ինձ ձեռք տալ:

— Հերիք է,— ասաց Յանգուլն ու ձեռքերը կախեց:

— Հերիք է,— ասացի ես ու թեթևացած շունչ քաշեցի,— բայց վաղը տղաների ներկայությամբ պետք է կռվենք:

— Պետք չի, ես տղաներին կասեմ, որ ուժեղ ես, բայց մտքովդ չանցնի, որ դոչությունը քեզ կտամ:

— Ոչ էլ ուզում եմ:

— Թե ուզում ես՝ իմ տեղակալը եղիր:

— Չեմ ուզում, դու քեզ համար, ես՝ ինձ,— պատասխանեցի ու պատրաստվեցի հեռանալու:

— Սպասի՛ր:

Ես կանգ առա:

— Էսպես մինչև ե՞րբ, ամեն օր հո չե՞նք կռվելու, արի՛ էգուցվանից հաշտվենք: Հաղթողը դոչ է:

— Լավ,— համաձայնեցի ես:

●

Հաջորդ օրը ես ու Յանգուլը, տղաներով շրջապատված, տենդորեն հաշվում էինք միմյանց.

— Իշի՛ գլուխ Ջեմալ:

— Կանաչի ծախող բերձեն:

— Ղվիկ թիֆլիսեցի:

— Լածիրակ:

— Փսլնքոտ:

— Իշարած:

— Ավանակ:

— Խիարի թթու:

— Կամբալա:

— Ղորջո[1]:

— Մեղուկա:

— Կրետին:

— Պագանինի:

Հիշոցներիս պաշարը սպառվեց: Ես լռեցի: Յանգուլը պատասխանի էր սպասում:

— Շարունակի՛ր, թե չէ պարտվում ես,— արմունկիս խփեց Կոկան:

— Վերջացավ:

— Մե՛ր հայհոյիր,— հիշեցրեց նա:

— Չի կարելի:

— «Մեր լացացնելը» ի՞նչ հայհոյանք է որ:

— Չգիտեմ ռուսերեն դա ոնց են ասում:

— Վրացերե՛ն ասա, չի հասկանում,— ստեց Կոկան:

— Յանգու՛լ, շենի դեդա վատիրե,— ասացի ես վրացերեն, բայց պատասխանի սպասելիս սիրտս կծկվեց:

— Իմանա սու ֆինձ պրոստիկաա ինենկա, Ջեմա՛լ,— պատասխանեց Յանգուլը:

Հասկացա, որ նա էլ մայր էր հայհոյում, բայց այն-

---

1 Ղորջո, կամբալա-ձկան տեսակներ են

պես գեղեցիկ ու երգեցիկ, ասես «Ավե-Մարիա» էի լսում:

— Շենի դեղա վատիրե, Յագու՛լի,— կրկնեցի հայհոյանքը:

— Իմանա սու ինե պրոստիկասա ինեկա, Ջեմա՛լ,— երգի նման կրկնեց նա:

●

Այսպես շարունակվեց ամբողջ կես տարի: Հետո կրքերը հանդարտվեցին: Ես ու Յանգուլը հիշոցները հասցրինք բարձրակետին, ամեն հանդիպելիս, ասես ողջունում էինք ու կանչում.

Ես — Շենի դեղա վատիրե, Յանգո՛ւլի:

Նա — Իմանա սու ինե պրոստիկասա ինեկա, Ջեմա՛լ:

●

Արևոտ օր էր: Ես ու Կոլյան վերադառնում էինք դպրոցից: Երկաթգծի կամրջի տակ Յանգուլը, ինչպես միշտ, թաղի տղաների հետ կռիվ-կռիվ էր խաղում: Մեզ տեսնելուն պես՝ խաղը դադարեցրեց ու մոտեցավ: «Միայն թե չկանչի ինձ»,— մտածեցի ես, ու նա դեռ ճանապարհի կեսին, հայհոյեցի.

— Շենի դեղա վա՛տիրե, Յանգո՛ւլի:

Յանգուլը ապշահար կանգնեց ու նայեց աչքերիս մեջ: Երկար սպասեցի պատասխանին, բայց Յանգուլը ձեն-ծպտուն չհանեց:

— Շենի դեղա վատիրե, Յանգուլի՛,— կրկնեցի ես:

Յանգուլը գլուխը կախեց, շրջվեց, այդպես գլխահակ և դանդաղ քայլելով հեռացավ: Ես շշմած նայում էի Յանգուլի հետևից:

— Տեսա՞ր լեզուն ոնց կապ ընկավ, վերջացավ դրա դոչությունը,— ասացի Կոլյային:

— Չվերջացավ, նոր է սկսվում,— պատասխանեց Կոլյան և բազմանշանակ ժպտաց:

— Ինչպե՞ս:

— Քեզ հաղթեց:

— Իսկ ինչո՞ւ չպատասխանեց:

— Երեկ հարցրեց.— «Ջեմալի մայրը որտե՞ղ է»: Ասացի՝ մայր չունի, դրա համար էլ չպատասխանեց:

Փշաքաղվեցի:

— Ինչի՞ ինձ չես ասել, ցնդա՛ծ:

— Ես չգիտեի...— Կոլյան կախեց գլուխը:

— Յանգո՞ւլ,— կանչեցի ես, բայց Յանգուլը բավական հեռու էր, կամ չլսեց, կամ չլսելու տվեց:

Այդ օրվանից նա շատ բարձրացավ իմ աչքում: Մեր միջից ընդմիշտ վերացավ ամեն կռիվ ու թշնամանք: Թեև հաշտ աչքով էինք միմյանց նայում, բայց լավ բարեկամներ չդարձանք: Հանդիպելիս ժպտում ու ձեռքի շարժումով ողջունում էինք: Հոր փոխարեն մեկ համար երբեմն ինքն էր կաթ ու մածուն բերում, այդ ժամանակ կամա-ակամա կռուցում էինք կաթի ու մածնի գնի, կամ նրա հոր, կամ բանջարեղենի կամ էլ պարզապես իշուկի մասին:

●

Սովորականի նման մի օր էլ կաթ բերեց: Երբ բակ մտավ՝ հազիվ ճանաչեցի, դեմքը սարսափելի ուռած էր և կապտած: Թաղի տղաներից ոչ ոք Յանգուլին այդպես չէր ծեծի, դա աներևակայելի էր, ուրեմն որևէ մեծի մատը խառն էր եղել:

— Ի՞նչ է պատահել,— կարմացած հարցրի ես:

— Ոչինչ:

— Լավ են ջարդել քեզ:

— Հա՛,— ասաց ու ժպտաց:

— Ո՞վ է, թե մենակ չես կարող հախից գալ, ես կօգնեմ քեզ: Էշին այստեղ կապիր, հենց հիմի գնանք:

Կաթով լի կճուճը դրեցի սանդուղքին և պատրաստվեցի հետը գնալ:

— Պետք չի, ոչինչ անել չենք կարող,— դառնորեն ժպտաց նա:

— Ո՞նց թե: Երկուսով չե՞նք կարող ծեծել:

— Ո՛չ երկուսով, ո՛չ էլ թաղի բոլոր տղաներով միասին:

— Էդ ո՞վ է որ:

— Իմ հայրը:

— Քո հա՞յրը:

— Հա՛, իմ հայրը:

— Եվ այսպես անգթորե՞ն,— ապշահար հարցրի ես ու ձեռքով շոշափեցի ուռած-կապտած դեմքը:

— Ես էի մեղավոր:

— Ի՞նչ ես արել:

— Երեք օր հետո Հունաստանից նավ է գալու Սուխում: Մեր համայնքի հույները Հելլադա են վերադառնում: Հայրս էլ...— Յանգուլը լռեց:

— Հետո՞:

— Էլ ի՞նչ հետո: Ես չեմ ուզում գնալ, չեմ ուզում... Հայրս ասում է՝ այնտեղ մեր հայրենիքն է, մեր հայրենի հողը, փառավոր Հելլադան... Պապուպապերիս արյունը կանչում է, պարտավոր ենք գնալ...

— Իսկ ինչո՞ւ չես ուզում գնալ,— անկեղծորեն զարմացա ես:

Յանգուլը երկար ժամանակ իշուկի ականջներն էր սղալում: Ամեն անգամ, երբ ձեռքը քսում էր, ականջները հեշտությամբ ծալվում էին, հետո տարօրինակ համառությամբ նորից ցցվում, ասես մեր խոսակցությունն էին լսում և վախենում էին որևէ բառ բաց թողնել:

— Ինչպե՞ս ասեմ քեզ...— պատասխանեց Յանգուլը,— ես իմ մայրիկին չեմ հիշում, իսկ հայրս ամբողջ օրը կամ բանջարանոցում է, կամ առուծախի: Ես Վենետիկյան խճուղու վրա եմ մեծացել, փողոցում... Իմ Հելլադան, իմ հայրենիքը Սուխումն է,

Վենետիկյան խճուղին, Չալքաշը, Կոկան, Պետյան, Կարլիկը, Փեմոն... Սև ծովը, իմ իշուկը, երկաթգծի կամուրջը...— Յանգուլը փոքր-ինչ տատանվեց, ապա շարունակեց.— Միդան... Միդան, նաև դու...— Յանգուլը «Միդա» անունը իմ ներկայությամբ առաջին անգամն էր տալիս, բայց չհարցրի՝ ո՞վ է։ Կոկան ինձ ասել էր։ Միդան աքխապի հետ ամուսնացած հույն կնոջ աղջիկն էր։ Սուխումում Միդայից գեղեցիկ աղջիկ չկար և այդ գեղեցկուհուն սիրում էր Յանգուլը։

— Հիմի հասկացա՞ր,— հարցրեց Յանգուլը և նայեց աչքերիս մեջ։

Իմ մարմնով սարսուռ անցավ։ Կյանքումս առաջին անգամ էի նման բառեր լսում։

— Հա՛, բայց սա ի՞նչ է,— խալաթը ետ քաշեցի ու ցույց տվի կրծքին դաջած HELLADOS-ը։

— Սա ի՞նչ, Ջեմա՛լ, սա ասեղով է ծեծած, հայրենիքը ավելի խորն է սրտիս մեջ...— այս ասելով Յանգուլը ձեռքը դրեց կրծքին։

Մինչ ես ջանում էի կոկորդս սեղմող հեղձուկը կուլ տալ և որևէ խոսք ասել, Յանգուլը քաշեց իշուկի սանձից ու բակից դուրս գնաց։

●

Երրորդ օրը, առավոտ ծեգին, Յանգուլն ու իր մոխրոտը կանգնած էին մեր բակում։

— Հայրս ամեն ինչ ծախեց՝ կովը, հողամասը։ Էշին ոչ ոք չի գնում, ձեր ժողովուրդը էշ պահելը ամոթ բան է համարում, բայց շատ սիրելի կենդանի է... աշխատող, հանգիստ, խելոք... Անտեր հո չե՞մ թողնի, բոլոր հույները մեկնում են... Սրան պահելը շատ հեշտ է, մի բուռ խոտով յոլա է գնում...— ճատ-հատ խոսում է, արցունքները կուլ տալիս, հետն էլ քնքշորեն փաղաքշում մոխրոտի վիզը։

— Գնո՞ւմ ես։

— Գնում եմ։ Կպահես, չէ՞։

— Կպահեմ։

— Դուրս չանես։

— Դուրս չեմ անի, Յանգո՛ւլ։

— Նինա Իվանովնային էլ կխնդրես՝ դուրս չանի։

— Կխնդրեմ, Յանգո՛ւլ։

— Կոկան քեզ կօգնի, սրան պահելն ի՞նչ է որ։

— Հեշտ է, Յանգո՛ւլ։

— Մի բուռ խոտ գցես առաջը, հերիք է։

— Հա՛, Յանգո՛ւլ։

— Անունը Ապոլոն է։

— Գիտեմ։

— Մեկ-մեկ փաղաքշի՛ր։

— Կփաղաքշեմ, Յանգո՛ւլ։

— Դե, ես գնացի, նավը երեկոյան մեկնում է։

— Գնա՛, Յանգո՛ւլ։

— Մեկ-մեկ փաղաքշի՛ր։

— Նավահանգիստ եմ գալու, Յանգո՛ւլ։

Յանգուլը գրկեց ինձ, երկար ժամանակ այդպես մնացինք, հետո հանկարծ ձեռքերը ետ քաշեց ու ինչքան կարող էր արագ փախավ։ Փախչում էր առանց ետ նայելու։ Ասես ինչ-որ սարսափելի և ահավոր բանից էր փախչում։

Երեկոյան ամբողջ Սուխումը նավահանգիստ

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



էր եկել: Ծաղիկների ծով էր, նվագախումբ կար, քեֆ-ուրախություն, թաշկինակների ծածանում, շնորհակալություն, ցտեսություն, մնաս բարով, բայց բոլորից շատ արցունք կար:

Սուխումի բնակիչները բաժանվում էին իրենց մարմնի մի մասից, իրենց միս ու արյունից՝ հույներից: Հույները բարձրացել էին ամպի նման ճերմակ փայլփլուն «Պոսեյդոն» նավի վրա և ինչ-որ բան էին ասում մեզ: Ոմանց՝ հունարեն, ոմանց՝ ռուսերեն, ոմանց՝ աբխազերեն, ոմանց՝ հայերեն, ոմանց՝ վրացերեն... Սպիտակ հսկայական «Պոսեյդոնը» կանգնել էր՝ նավախելը դեպի ափը: Ծովը նկատելի հուզվում էր, և նավի քթամասը այնպես էր օրորվում, ասես նա էլ էր մեզ հրաժեշտ տալիս:

Ես ուրիշ երեխաների հետ միասին՝ փորով հենված էի նավահանգստի բազրիքին և տախտակամածին հավաքված հույների մեջ աչքերով փնտրում էի Յանգուլին: Հանկարծ տեսա նրան: Յանգուլը դարձյալ սև սատինե խալաթով էր, կուրծքը բաց: Նա կանգնած էր հոր առաջ և ինձ թվաց, որ հայրը բռնել է որդու ձեռքը:

— Յանգո՛ւլ, Յանգո՛ւլ,— կանչեցի ես ու սկսեցի ձեռքերս թափահարել:

Նա երկա՛ր-երկար փնտրեց ինձ ամբոխի մեջ, ի վերջո ձայնս լսեց և ինձ տեսնելով, ձեռքերը վեր բարձրացրեց:

— Յանգո՛ւլ, գնաս բարո՛վ, Յանգո՛ւլ:

— Ջեմա՛լ, էղո աղապո ի մանա սու:

— Ջեմա՛լ, էղո աղապո ի մանա սու:

— Ջեմա՛լ, ես սիրում եմ քո մայրիկին:

Ասում էր հունարեն և նորից ինձ թվաց, որ նա երգում է: Ես չդիմացա նրա ձայնին ու հայացքին, շրջվեցի և լացակումած վերադարձա տուն:

Երրորդ օրը, Կելասաուրի գետաբերանի մոտ ծովը ափ էր նետել մի տղայի դիակ, ավելի ճիշտ Ստարավերցի ձկնորսներն էին ջրից հանել: Այնտեղ յողացող տղաներիս կանչեցին՝ ճանաչելու: Տղայի դեմքը այնպես էր այլանդակվել, որ ոչ ոք չճանաչեց: Միայն ես, ես ճանաչեցի, երբ նրա բաց կրծքի վրա նկատեցի ասեղնածեծ HELLADOS-ը:

Շնչակտուր թողեցի լողափը, ճամփան, երկաթգիծը, Վենետիկյան խճուղին և գժվածի նման ինձ տուն գցեցի...

— Ի՞նչ է պատահել, տղա՛ս,— վախեցած հարցրեց մորաքույրս:

— Մորաքո՛ւյր... Յանգուլը վերադարձավ...— պատասխանեցի ես, հետո չոքեցի նրա առաջ, դեմքս թաղեցի փեշերի մեջ ու աղիողորմ հեկեկացի:

*Վրաց. թարգմանեց ՀՐԱՉԻԿ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ*

# ԵԹԵ ՃԻՇՏ ԸՆՏՐԵՍ ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԴ...

*Բազմերանգ թելերը հյուսվում են իրար, և մեքենայի գլանի վրա միլիմետր առ միլիմետր ամբողջանում է գործվածքը: Սպիտակ խալաթավոր դպրոցականները ուշադիր հետևում են մեքենաների աշխատանքին և երբեմն-երբեմն ձեռքը սահեցնում գործվածքի մակերեսին, ստուգում որակը, որպեսզի հանկարծ աչքի համար անտեսանելի կոշտուկներ չլինեն: Աղջիկներից շատերը, թեև, դեռ աշակերտ, բայց արդեն երկու մեքենա են սպասարկում, իսկ Գայանե Մանուչարյանը տրիկոտաժի արտադրամասի տեխնիկական վերահսկիչն է: Նա բազմափորձ վարպետի վստահությամբ մեքենայից-մեքենա է անցնում և ստուգում Սեդա Ավագյանի, Աննա Հեքիմյանի, Սոֆիկ Մելքոնյանի և մյուսների աշխատանքը, հարկ եղած դեպքում էլ օգնում նորեկներին, ցուցումներ տալիս:*

*Դպրոցական արտադրական կոմբինատը գտնվում է Երևանի Վարդաշեն թաղամասում: Թվով երրորդ այս կոմբինատն առաջին անգամ այցելող դպրոցականին նախ ծանոթացնում են այն տասներեք մասնագիտություններին, որոնց կարելի է տիրապետել կոմբինատում: Ընտրիր, որն ավելի սրտամոտ է քեզ: Իսկ ընտրելուց հետո պետք է լավ աշխատել: Ինչպես բոլոր բանվորական կոլեկտիվներում, այստեղ էլ բրիգադ կա, տեղամաս, արտադրամաս, այստեղ էլ մրցում են իրար հետ, պարտավորություններստանձնում և ամեն եռամսյակ ամփոփում արդյունքները: Կոմբինատի դիրեկցիայի սահմանած փոխանցիկ կարմիր դրոշը տրվում է լավագույններից լավագույնին:*

*Կարմիր պաստառի վրա կուր չի գրված. «Եթե ճիշտ ընտրես մասնագիտությունդ, ապա երջանկությունը ինքը կգտնի քեզ»:*

*Երկրորդ տարին կոմբինատ այցելող դպրոցականներն արդեն կարողանում են աշխատել այն-*





# «ՇԼԻՄԱՆ»

Ութամյա Հենրիխի հայտարարությունը՝ «Երբ մեծանամ, կպեղեմ Տրոյան», պարծենկոտություն է թվում: Տղան այդպես է հայտարարում, երբ հայրը նրան նվիրած «Համաշխարհային պատմություն մանուկների համար» գրքի մեջ ցույց է տալիս այրվող Տրոյայի նկարը: Այդ օրվանից Հոմերոսը դառնում է Հենրիխին այնքան սիրելի, որ վաղ առավոտից մինչև ուշ գիշեր ծանր աշխատանքով կոպեկներ վաստակած պատանի Շլիմանը իր խղճուկ խնայողություններով հունարեն իմացող մեկի համար սկսում է օղի գնել, պայմանով, որ ամեն բաժակի դիմաց նա մի հատված արտասանի Հոմերոսից: Ցուրտ ձեղնահարկում լեզուներ ուսումնասիրող հյուծված ու հիվանդոտ պատանու երկաթյա կամքը զարմացնում է ու ոգևորում: Նա լեզուներ ուսումնասիրելու այնպիսի տարօրինակ ու կատարյալ մեթոդ էր հորինել իր համար, որ վեց շաբաթում կարողանում էր ազատ խոսել ու գրել ցանկացած օտար լեզվով: Եվ որ երկիր էլ այցելեր, իր օրագիրը գրում էր այդ երկրի լեզվով: Շլիմանի օրագիրը կարող է կարդալ միայն բազմաթիվ լեզուներ իմացող մարդը:

Բազմաթիվ անգամներ է Շլիմանը մահվան հետ քայլել կողք կողքի: Մեկ անգամ հրաշքով է կենդանի մնում, երբ խորտակվում է նավը, մեկ ուրիշ անգամ գնդակահարվելու սպառնալիքը աչքի առաջ ունենալով՝ ծպտված մտնում է գերմանացիների կողմից գրավված Փարիզը, մեկ ուրիշ անգամ գնդակների տարափի տակ նավակով լողում է Նեղոսով և այլն:

Նշանավոր մեծահարուստ, վաճառական դարձած Շլիմանը, երբ արդեն չէր հավատում, թե կիրչի իր մանկության տարիների երազը, լքում է առևտրական աշխարհը, գնում է Տրոյան որոնելու և... գտնում է՝ զարմացնելով մարդկությանը, վայրացնելով գրասենյակային գիտնականներին, որոնք այդ տարիներին մոտ 90 աշխատություն էին գրել, ապացուցելով, որ առասպել է Հոմերոսյան Տրոյան, որ Հոմերոսը միայն հետաքրքիր հեքիաթներ է հորինել: Իսկ Շլիմանը Տրոյան գտնելով, ապացուցում է, որ Տրոյան իսկապես եղել է, Հոմերոսն էլ ոչ թե հեքիաթասաց է, այլ՝ պատմիչ:




Հաճախ խոչընդոտների հանդիպելով՝ դու նահանջում ես, կիսատ թողնում սկսած գործը: Հ. Շտոլի գիրքը գերմանացի աշխարհահռչակ հնագետ Հենրիխ Շլիմանի՝ այդ զարմանալի մարդու մասին, քո մեջ նոր ձգտումներ կարթնացնի, կսովորեցնի խիզախ ու վճռական լինել դժվարությունների հանդիպելիս: Դու կհամոզվես, որ որևէ նպատակ իրեն-իրեն չի իրականանում, հարկավոր է այն նվաճել:

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

*պես, որ նույնիսկ գերակատարում են առանձնած պարտավորությունները: Իսկ թե ինչպիսի արտադրանք են տալիս, կարելի է տեսնել նույն կոմբինատում: Առանձին ցուցափեղկում տեղադրված են դպրոցականների կարած շրջազգեստները, վերնաշապիկները, նրանց պատրաստած էլեկտրասարքավորումները: Նույնիսկ մանկական կահույքի և սպասքի նմուշներ կան այնտեղ:*

*Թող զարմանալի չթվա, որ կոմբինատի մի քանի արտադրատեսակներ արդեն թողարկվում են պետական որականիշով: Այդ նըշանը կարելի է տեսնել խարիսխների, հովացուցիչների, արագացուցիչ կարգավորող սարքերի վրա, որոնք առաքվում են էլեկտրատեխնիկական, մեքենաշինական, միկրոէլեկտրաշարժիչների գործարաններ և տարբեր ֆաբրիկաներ:*

*Երեք տարվա ընթացքում կոմբինատը տվել է 550 շրջանավարտ, որոնց մեծ մասը հասունության ատեստատի հետ միասին բանվորական որակավորում է ստացել, իսկ կեսից ավելին՝ համալրել բանվորական տարբեր կոլեկտիվներ:*

*ԼԱՎՐԵՆՏԻ ՄԻՐԶՈՅԱՆ*

# ՋՐԱԾԱՂԿԻ ՍՏՎԵՐԸ

*ՀՐԱՉՅԱ ՍԱՐՈՒԽԱՆ*

Ջրածաղկի ստվերն եմ ես,
Արեգակն է ինձ հսկում...
Թե ծաղիկս ջրից պոկես,
Կմահանամ ես իսկույն:

Թեև երկրում սուգ չի լինի
Քառասուն օր ու գիշեր,
Բայց արևի շողերը ինձ
Հուր-հավիտյան կհիշեն:

Իսկ օվկիանը ծով կդառնա,
Ծովը՝ փոքրիկ մի լճակ,
Լճակն իսպառ կփոքրանա
Ու կդառնա... պղպջակ:

Իսկ ձկները կանհետանան.
Ինչպե՞ս ապրեն առանց ջուր:
Ջկնորսները կվշտանան,
Լաց կլինեն ամենուր:

Ու անհամար արցունքներից
Կգոյանա մի լճակ,
Ու լճակը ծով կդառնա,
Ծովը՝ օվկիան անհատակ:

Ու կխայտան ձկներն էլի,
Ջկնորսները կժպտան,
Սակայն, ավա՜ղ, էլ չի լինի
Ջրածաղկի ստվերն այն...

Ջրածաղկի ստվերն եմ ես,
Արեգակն է ինձ հսկում,
Թե ծաղիկս ջրից պոկես,
Կմահանամ ես իսկույն:

# ԿԵՑՑԵ՛Ն ԲԱՐԻ ՄԱՐԴԻԿ

*ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ*

Վախկոտ մարդիկ չար են լինում,
Խոսքեր ունեն կծու,
Եվ հենց մի տեղ լավն են տեսնում՝
Ցեխ նետել են փորձում:

Այնինչ կյանքում ուժեղ մարդիկ
Միշտ բարի են լինում:
Ավելի ճիշտ՝ բարի մարդիկ
Միշտ ուժեղ են լինում:

Նրանք այնպե՜ս են հավատում
Իրենց գործին բարի,
Եվ բարությամբ նաև հաղթում
Ամեն տեսակ չարի:

Եվ քանի դեռ ապրում են, կան
Այս աշխարհում մարդիկ,—
Ասել է, թե լավ մարդիկ կան,
Որ զսպում են վատին:

Բարի մարդիկ անչափ շատ են,
Կեցցե՛ն բարի մարդիկ...

*ՍԱՄՎԵԼ ԲՈԴԼԱՐՅԱՆ*

# ԵՐԿԻՐ ԻՄ

Երկնքում՝ անհամար զանգեր,
Դաշտերում՝ զանգերի ղողանջներ,
Գյուղերում՝ մայրաբույր լավաշներ.
Երկի՜ր իմ, երկի՜ր իմ, Հայաստա՛ն...

Երկինքը՝ կապուտա՜կ, կապուտա՜կ,
Շեները՝ ամպի տակ, ամպեղեն,
Սարերում՝ նժույգներ հրեղեն.
Երկի՜ր իմ, երկի՜ր իմ, Հայաստա՛ն...

Մառանում՝ եռացող գինիներ,
Տներում՝ նազանի աղջիկներ,
Սասնա քոռ, Սասնա ծուռ տղաներ՝
Երկի՜ր իմ, երկի՜ր իմ, Հայաստա՛ն...

Ծաղկոտ և ուրցոտ սեզ՚սարեր,
Տուն կանչող, տուն բերող ճամփաներ,
Անսահման, անհատնում կարոտներ.
Երկի՜ր իմ, երկի՜ր իմ, Հայաստա՛ն...

# ԲԱՆԱՍՏԵՂԾԻ ՊԱՐԳԵՎՆԵՐԸ

Երգում եմ գարուն,
Երգում եմ ամառ,
Երգում եմ աշուն...
Տունս լցվում է
Ծաղկանց բույրերով:
Գիշերն հենց անցնի,
Կելնեմ ու թաքուն
Կանցնեմ տնից տուն,
Կանցնեմ սրտից սիրտ
Եվ կբաժանեմ
Անքուն գիշերվա
Վաստակս բուռ-բուռ:

# ՔԱՆԻ ՄԱՅՐՍ ԿԱ

*ՍՏԵՓԱՆ ՄԽԱՐԳՐՁԵԼԻ*

Քանի մայրս կա՝ ճերմակելս ի՞նչ,
Ոչինչ են իմ դեմ վերելքները դիք.
Քանի մայրս կա՝ մանուկ եմ նորից,
Բարդի եմ դալար, հպարտ, սլացիկ...

Ա՜խ, իմ մայրիկի ձեռքերում թոշնած
Կուզեմ, որ հավետ անպակաս լինի
Մանուշակների փունջը կապուտաչ,
Ինչպես կապուտաչ հայացքը երկնի...

Ձմռան օրվա պես հալվում եմ ահա,
Մթնում եմ արդեն, բայց թե լավ գիտեմ,
Քանի մայրս կա՝ ես չեմ ծերանա,
Նույն երեխան եմ միշտ էլ նրա դեմ...

*Վրաց. թարգմ. ՀՈՎՀ. ԿԱՐԱՅԱՆԻ*



# ԱՇԽԱՐՀԸ

«Անիվավոր տուրուսաններ» արտահայտությունը նշանակում է ցնդաբանություն, անմտություն, խաբեություն: Այդպես ասում են անհավանական բաների մասին, որ ոչ եղել է, ոչ էլ կարող է լինել:

Սակայն «անիվավոր տուրուսաններ» իրականում գոյություն ունեցել են:

Տուրուսան, կամ կարճ ասած՝ տուրան, հին ռուսական անիվներով պաշարման աշտարակ է: Պաշարելով թշնամու քաղաքը, զինվորները բերդապարիսպներին մոտեցնում էին տուրուսան և աշտարակի վրայից հարվածում խուճապահար թշնամուն: Եվ քանի որ այդ տեսարանի ականատեսներից շատ քչերն էին ողջ մնում, «անիվավոր տուրուսանների» մասին լեգենդներ էին պատմում: Նրանց գոյությանը շատերը դժվարանում էին հավատալ:

Ապագայի տրանսպորտը, որի մասին կխոսենք, այսօր էլ կարող է անհավանական, անմիտ թվալ: Ասենք, որ XXI դարում մարդկանց ու բեռների փոխադրումը մի տեղից մյուսը կիրականանա... առանց անիվների:

Անիվը մեր հեռավոր նախնիների հայտնագործումներից մեկն է, որով մենք իրավունք ունենք հպարտանալու. ոչ մի կենդանի էակ չի մտածել այն կիրառել որպես շարժման միջոց:

Քաղաքակրթության ամբողջ պատմությունը միաժամանակ անիվի պատմություն է: Անիվն աստիճանաբար արագություն էր ձեռք բերում՝ երկրագնդի ամենաիմաստուն ու ուժեղ բնակչին դարձնելով և ամենաարագընթացը՝ հռոմեական մարտակառքեր, ապա առաջին շոգեքարշեր, տրամվայներ, ապա ավտոմեքենաներ:

Նշանավոր հռոմեական ճանապարհներն ու երկաթուղիները, ժա-



մանակակից կամուրջներն ու ավտոճանապարհները՝ այս բոլորը տուրք են անիվին:

Սակայն եթե մարդատար ավտոմեքենան միայն մի քանի մետրով շեղվի ճանապարհից և ճամփեզրից դուրս ընկնի, ապա առանց քարշիչ մեքենայի կամ նույնիսկ վերամբարձիչի անկարող կլինի շարունակել ճանապարհը:

Չգտնելով անիվը հարմարեցնել ճանապարհի խորդուբորդություններին, մարդիկ սրամիտ որոշում կայացրին՝ անիվավոր տրանսպորտին ստիպեցին լավ ճանապարհը կրել հենց իր վրա: Այսպես երևան եկան թրթուրավոր մեքենաները՝ տրակտորները, տանկերը, ամենագնացները:

Վերջին տարիներին մարդն սկսեց առավել ուշադրություն դարձնել, թե ինչպես է տեղից տեղ փոխադրվելու հարցը լուծում ամենատաղանդ գյուտարարն ու նորարարը՝ բնությունը:

Գիտնականներն ու կոնստրուկտորներն արդեն ստեղծել են քայլող ու սողացող, ցատկող ու թևերը թափահարող մեքենաների առաջին օրինակները: Այսօր նրանք դեռևս շատ հեռու են կատարյալ լինելուց, բայց հաշվարկները ցույց են տալիս, որ հետագայում զարգանալով, այդ մեքենաները շատ ցուցանիշներով անհամեմատ ավելի առաջ կանցնեն անիվավորներից: Վառելանյութի համեմատաբար քիչ ծախսը, սարեր ու ճահիճներ, ավազուտ ու ջրային տարածություններ հաղթահարելու կարողությունը թույլ են տալիս այդ մեքենաներն անվանելու ապագայի տրանսպորտ:

Քայլող մեքենայի գաղափարը առաջիններից մեկն արտահայտեց



ու անհրաժեշտ հաշվարկներ արեց ռուս նշանավոր մաթեմատիկոս Պ. Լ. Չեբիշևը: Նրա ստեղծած մեքենայի ուղղակի ժառանգորդն է ամբողջ աշխարհին հայտնի սովետական քայլող էքսկավատորը:

Իսկ սա և այս բնագավառի նորություններից մեկը: Մեր առջև է չորսոտանի քայլող բեռնատարի առաջին փորձնական օրինակը, որին ոչ առանց հիմքի «մեխանիկական ձի» անվանումն են տվել:

«Ձիու» քաշը մոտ մեկուկես տոննա է, շարժիչի հզորությունը՝ 90 ձիաուժ, ոտքերը երկուսուկես մետրանոց եռամաս լծակներ են, որոնց ղեկավարում է «հեծյալը»՝ մեքենայի խցիկում նստած մարդը: Նա ձեռքերով շարժում է ղեկապծակները, ոտքերով սեղմում ոտնակները: Այս շարժումները փոխանցվում են «ձիու» ոտքերին.

# ԶՐՈՒՅՑ ԱՊԱԳԱՅԻ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՄԱՍԻՆ

և նա հնազանդ քայլում է՝ ժամում հաղթահարելով մոտ 10 կմ ճանապարհ:

Այսօր մենք անչափ կզարմանայինք, լսելով, որ սովորական մարդը առանց շնչակտուր լինելու կարող է ժամերով վազել տրամվայի ետևից՝ մի քայլ անգամ ետ չընկնելով:

Պարզվում է, որ նման հնարավորություն մենք բոլորս էլ ունենք: Մնում է միայն հագնել Ու.Ֆայֆ ավիացիոն ինստիտուտի ուսանողների ստեղծած հատուկ կոշիկները: Դրանք բնավ էլ կախարդական չեն: Ուղղակի սովորական սրնքակալների երկու կողմերից տեղադրված են... ներքին այրման շարժիչներ:

Մարդը նման կոշիկներով առանց հոգնելու ժամում կարող է վազել 22—25 կիլոմետր, ծախսելով ընդամենը 70 գրամ վառելանյութ: Մեկ շիշ բենզինը բավական է մեկ օրում Մոսկվայից Տուլա հասնելու համար:

Սակայն արագընթաց կոշիկները տեղից-տեղ փոխադրվելու բնավ էլ ամենահավանական միջոցը չեն, որին կարելի է հանդիպել ամենամոտ ապագայում:

Օրինակ՝ ի՞նչ կասեիք, եթե տեսնեիք մեծ արագությամբ թռչող մի մարդու, նստած ինչ-որ



տարօրինակ սարքի վրա, ճիշտ է, քիչ մեծ, քան ինքնաթափին շաղու–պատավի հանրահայտ ավելը:

Հենց այդպիսի ռեակտիվ սարք է մշակել ամերիկյան «Ուիլյամս ռիսերչ քորփորեյշըն» ֆիրման: Սարքն օժտված է մեծ մանևրայնությամբ և զարգացնում է ժամում 100 կմ արագություն: «Ռեակտիվ ավելի» անվայրէջք թռիչքի տևողությունը մոտ 30 րոպե է:



Մամուլում հաղորդագրություն է երևացել նաև մի թռչող սարքի մասին, որն առանց հապաղելու կարելի է գորգ-ինքնաթիռ անվանել: Նրա հանուն խոնկրաֆտ է:

«Այն, անեն, տեսիլք լինեը: Անտարմուկ, վեր բարձրացրած պաքանման ծայրերով, որոշ ժամանակ սավառնում էր սեղանի վերևում, ապա հիասքանչ շրջադարձ կատարելով կանգ առավ, ասես կախված մնաց օդում: Դա ձգողականության օրենքին հակասող անհավանական բան էր թվում»: Խոնկրաֆտի փորձնական թռիչքի ականատեսի այս պատմությունը, ի միջի այլոց, հիմնվում է բնության վաղուց հայտնի օրենքների վրա: Նրա վերամբարձ ուժն առաջանում է էլեկտրոստատիկ դաշտում իոնաց-



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

ված ատոմների ստեղծման ու արագություն ձեռք բերելու հաշվին: Բարձր լարվածության էլեկտրաէներգիան այստեղ անմիջականորեն փոխակերպվում է օդի շիթի էներգիայի, որն էլ բարձրացնում և պահում է սարքը:

Գորգ-ինքնաթիռը չունի շարժվող մասեր, այդ պատճառով էլ կարող է բավական երկար ժամանակ ծառայել: Այն անաղմուկ է, հեշտ է ղեկավարվում և շատ շահավետ է, չէ՞ որ այն կարիք չի զգում մեկնարկի ու վայրէջքի հրապարակների:

Կարելի էր էլի շատ պատմել մագնիսական բարձերով գնացքների, հրթիռի փոխարկվող ինքնաթիռների, արագության չլսված ռեկորդների, իներցիայի և Երկրի ձգողականության ուժն օգտագործող տրանսպորտային միջոցների մասին:

Բայց առանց այդ էլ պարզ է, որ հեռու չէ այն օրը, երբ գորգ-ինքնաթիռն ու արագընթաց կոշիկները վերջնականապես հեքիաթներից կփոխադրվեն միջնակարգ դպրոցի ֆիզիկայի դասագրքերը: Իրականանում են ամենահանդուգն երազանքները: «Հրաշքներում ամենատարօրինակն այն է,— ասել է մի իմաստուն,— որ նրանք կատարվում են»:



# ԲՌՆԻ՛Ր ԲՆՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՂՈՊՏՈՂԻ ՁԵՌՔԸ

Մենք «Պիոներ»-ի էջերում բազմիցս պատմել ենք ձեզ մեր բնաշխարհի այն բույսերի մասին, որոնք երկրագնդի այլ վայրերում չեն աճում, մեր հանրապետության մենաշնորհն են, այսինքն՝ տիպիկ հայկական տեսակներ են։

Մենք պարտավոր ենք աչքի լույսի պես պահպանել այդ բույսերը, իբրև բնության հազվագյուտ մասունքներ, ինչպես մեր հազվագյուտ ճարտարապետական կոթողները, ձեռագրերը, թանգարանային նմուշներն ենք պահում, պահպանում։

Սակայն մենք, բնության պահպանության գործի պրոպագանդիստներս, հաճախ անելանելի վիճակի առաջ ենք կանգնում. ահա թե ինչո՛ւ։ Մենք մամուլով, ռադիոյով, հեռուստատեսությամբ կոչ ենք անում ազգաբնակչությանը ճանաչել այս ու այն հազվագյուտ և անհետացող տեսակը և պահպանել այն։ Մանրամասն նկարագրում ենք բույսը, երբեմն նույնիսկ տպագրում դրա գունավոր նկարը։ Շատերը ճանաչելով այդ բույսերը, անում են հակառակը։

Բանն այն է, որ այդ հազվագյուտ և անհետացող տեսակներից շատերն ունեն բուժիչ հատկություն։ Իմանալով այս և ճանաչելով բույսը, նրանք սկսում են ագահաբար և անսահման քանակությամբ հավաքել դրանք, ամայացնելով բնությունը և այդ տեսակի իսպառ վերացման ռեալ վտանգ ստեղծում։

Դրա հետևանքով ներկայումս անհետացման եզրին են կանգնած լոշտակը, մատիտեղը, արևքուրիկը, շիկատակը, կնքաբույսը և մի շարք այլ բույսեր։

Պատահում է, որ այդ կողոպուտը նույնիսկ կազմակերպված, մասսայական բնույթ է կրում։ Գիտական ամբողջ արշավախմբեր են շրջում մեր հանրապետությունում, բուսական նմուշներ հավաքելու, կենդանաբանական այգու կամ թանգարանների համար կենդանիներ որսալու, դեղաբույսեր հավաքելու անվան տակ։ Ես ինքս առիթ եմ ունեցել տասնամյակներ շարունակ տարվա ընթացքում մի քանի անգամ պաշտոնակիցներիս հետ, մեքենայով շրջել հանրապետության դաշտերում, մարգագետիններում, անտառներում, բուսական նմուշներ հավաքել, կանապան ուսումնասիրություններ կատարել։ Չեմ հիշում մի դեպք, երբ որևիցե քաղաքացի, պաշտոնական անձ կամ դպրոցական, մոտենար մեզ տեղեկանալու, թե ի՞նչ բույսեր ենք հավաքում, ի՞նչ նպատակով և ունե՞նք արդյոք դրա թույլտվությունը, համապատասխան փաստաթղթեր։

Սրանից մի քանի տարի առաջ մեր հարևան հանրապետություններից մեկում գտնվող դեղաբույսերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի աշխատակիցները, իրենց դիրեկտորի ղեկավարությամբ, գալիս են Հայաստան՝ վայրի դեղաբույսեր հավաքելու, շրջում են ողջ հանրապետությունը, հավաքում ինչ ցանկանում են, թեպետև չունեին դրա իրավունքը։ Մի քանի տարի շարունակում են իրենց ապօրինի գործունեությունը, մեծ քանակությամբ դեղաբույսեր տանում։

Խրախուսված նրանով, որ ոչ ոք իրենց չի անհանգստացնում, դեղաբույսերի համամիութենական գիտահետազոտական հիշյալ ինստիտուտի աշխատակիցները 1976 թվականին մի նոր արշավանք են կազմակերպում դեպի Հայաստան։ Այս անգամ նրանք մեծ քանակությամբ բուսական հումք են տանում Էջմիածնի շրջանի Լենուղի գյուղի հանդերից, որտեղ նրանց ունեցած տեղեկությունների համաձայն գտնվում էր շնամեռուկի Հայկական ՍՍՀ-ի միակ բուսուտը՝ խիստ սահմանափակ չափերով։ «Բարյացակամ» էջմիածնեցիները անկոչ հյուրերին սիրով առաջնորդում են դեպի շնամեռուկի բուսուտը։ Այնուհետև չնչին վարձատրությամբ, նրանք մի ամբողջ բեռնատար մեքենայի տարողությամբ բույսեր են հավաքում և «բարի ճանապարհ» մաղթելով ապօրինի բուսահավաքներին, հանգիստ խղճով տուն վերադառնում։

Եվ միայն այդ վայ-մասնագետների մեկնելուց հետո է պարզվում, որ նրանք խսպառ ոչնչացրել են շնամեռուկի այն հազվագյուտ բուսուտը, իրենց հետ տանելով բոլորը, ինչ կար-չկար։

Իսկ որտե՞ղ էին իշխանությունների ներկայացուցիչները, տեղական կազմակերպությունների ղեկավարները, հազարավոր, մեծահասակ ու պատանի բնասերները։

Ի՞նչ կասեիք դուք, կամ ինչպիսի՞ վերաբերմունք կցուցաբերեիք, եթե գտնվեր մեկը, որ խուժեր, ասենք, Մատենադարան և փորձեր հափշտակել հնագույն ձեռագրերը։ Ինչպիսի՞ վերաբերմունք կցուցաբերեիք այն անձի նկատմամբ, որը փորձեր օրը ցերեկով թանգարանից կամ պատկերասրահից դուրս տանել որևիցե պատմական ցուցանմուշ, նշխարք, գեղարվեստական կտավ։

Ես համոզված եմ, որ մենք բոլորս կյանքի գնով կարգելեինք այդ բարբարոսությունը։

Իսկ ինչո՞ւ նույնպիսի վերաբերմունք չենք ցուցաբերում նաև բնությունը կողոպտողների նկատմամբ։ Չէ՞ որ երկու դեպքում էլ խոսքը վերաբերում է մեր հանրապետության մենաշնորհ հանդիսացող հազվագյուտ նյութերին։ Դեռ ավելին, ես կասեի, հազվագյուտ բուսական նմուշների հափշտակումը ավելի ծանր հանցագործություն է, քանի որ այդ բույսերը երկրագնդի այլ վայրերում չեն հանդիպում և եթե մեր հանրապետությունում ոչնչանան, ապա

ընդհանրապես խպառ, անդառնալիորեն կվերանան բնությունից: Դրա համար մենք պատասխանատվություն կկրենք ապագա սերունդների, ամբողջ մարդկության առաջ:

Նույնքան էլ մտահոգիչ է հավվագյուտ կենդանիների կողոպուտը:

Ամեն տարի մեր հանրապետություն են գալիս կենդանաբանների անվան տակ մարդիկ և անարգել կերպով օձեր են որսում: Տեղական կազմակերպությունների ներկայացուցիչների միջով էլ չի անցնում ստուգել նրանց փաստաթղթերը. ունե՞ն դրա իրավունքը, թե՞ ոչ:

Եվ պատահական չէ, որ գյուրզա օձը, որի թույնը հրաշալի դեղամիջոց է, աղետալի արագությամբ անհետանում է մեր բնաշխարհից: Շատերը դրա համար ուրախ են. թող թունավոր օձեր քիչ լինեն: Սակայն այդպես մտածելը նույնպես բնությունը վատ ճանաչելու արդյունք է: Իսկ հայտնի՞ է այդ մարդկանց, թե որքան դաշտային մկներ, վտանգավոր վնասատու միջատներ են ոչնչացնում այդ օձերը, որոնց թույնը ոսկուց էլ թանկ արժե:

Այսօրվա կերպով կենդանիների հավաքով են զբաղված նաև որոշ խրտվիլակագործներ, թանգարանների, բժշկական ինստիտուտների և ուսումնարանների, դպրոցների կենսաբանական կաբինետների աշխատողներ: Այս ճանապարհով ամեն տարի հայրենի բնությունից անհետանում են մեծ թվով թռչուններ, սողուններ, մանր կաթնասուններ: Հատկապես շատ են տուժում ռզնիները, կրիաները:

Հասարակության լայն շրջանները, հատկապես պատանի բնասերները, պետք է հսկողություն սահմանեն դրանց նկատմամբ, անտարբեր չանցնեն նման փաստերի կողքով: Աշխարհի մի շարք երկրներում հրատարակվում են հատուկ տեղեկատուներ, որտեղ մանրամասն նկարագրում են անհետացող և հազվագյուտ բուսատեսակները, տպագրում դրանց գունավոր նկարները. զբոսաշրջիկների և ընդհանրապես բնության գրկում ժամանակ անցկացնողների «հանգստի ռձին» հետևողները ստուգում են, թե ի՞նչ բույսեր են մարդիկ հավաքում դաշտերից ու անտառներից: Եվ վայ նրան, ով կփորձի հազվագյուտ բույսերին ձեռք տալ:

Նման տեղեկատուների անհրաժեշտություն մենք էլ ունենք, և հավանաբար դրանցից կունենանք, որոնք մեծապես կօգնեն յուրաքանչյուր քաղաքացու, այդ թվում նաև պատանի բնասերներին, կանխելու բնության կողոպուտը, նպաստելու բնության պահպանության համաժողովրդական գործին:

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Լույս է տեսնում 1923 թվականից




3. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ,

Խմբագրական կոլեգիա՝

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՊԵՏՐՈՍՅԱՆ Թ., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 02090: Պատվեր 2483: Տպաքանակ 51000: Տպ. 3 մամ.: Ստորագրված է տպագրության 8 II 1979 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մնդոյանցի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# Որ մեղմանա կարկուտը չար

ՎԱԼԵՐԻ ԳԱՐԱՆՅԱՆ

Տագնապահար ու հողմահար,
Կարկտաբեր ամպերի չուն
Պտտվում է լեռների մեջ,
Մի գագաթից մեկը թռչում:

Պտտվում են մութ ամպերի
Ստվերները չարագուշակ,
Մերթ ծածկում են ծաղկած այգին,
Մերթ սևացնում հովիտ ու դաշտ:

Իմ տատիկը ելել է դուրս
Բուռ-բուռ աղ է վեր շպրտում,
Որ մեղմանա կարկուտը չար,
Անձրև դառնա ծլած արտում:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806